# ՄԵՐ ՓՈՔՐԻԿՆԵՐԸ



ԾԱՂԻԿՆԵՐ
ՉԱՄՅԱՆ ԳՐԻԳՈՐ
(12 տարեկան)

## ՍԻՐԵԼԻ ՊԻՈՆԵՐՆԵՐ

Դուք գիտեք, որ հունիսի 1-ը երեխաների պաշտպանության միջազգային օրն է:

Սովետական Միության ժողովուրդների հետ աշխարհի առաջադեմ մարդիկ վճռականորեն պայքարում են խաղաղության թշնամիների դեմ, որպեսզի միշտ անհոգ և խաղաղ անցնի ձեր մանկությունը:

Այդ նշանավոր օրվա առթիվ ամսագրի այս համարում մենք ուզում ենք ձեզ ծանոթացնել մեր փոքրիկ, շնորհալի մանուկների հետ:

Ահա նրանց ստեղծագործություններից մի քանիսը:

ԱԶԱՏ ԺԱՄԵՐԻՆ

ԿԻՐԱԿՈՍՅԱՆ ՎԱԼԵՐԻԿ (12 տարեկան)



Մարգագետնում մի փոքրիկ բլրակ կա: Հասարակ բլրակ չէ. այնպես է վեր-վեր թռչում ու օրորվում, որ կարծես ոտներ ունի: Եվ իրոք նա ոտներ ունի և նույնիսկ մռութ: Ա՜խ, չէ՞ որ դա Խլուրդն է:

Ահա և այստեղ եմ ես, իմ գանձերով, որ գետնի տակից եմ գտել: Մեխը լավն է, բայց գնդակը նրանից լավ է, իսկ հայելին ավելի լավ է: Սակայն ավելի լավ կլիներ մի գրպաններով շալվար ունենայի: Ա՜խ, ի՜նչ հրաշալի բան կլիներ: Ինչքա՜ն բան կարելի է դնել դրա գրպանները: Իսկ որտեղի՞ց ճարեմ այդպիսի շալվար:

Նա հանդիպեց մկնիկին:

— Է՜յ, Մկնիկ, կանգնիր: Դու մարդկանց մոտ ես ապրում՝ խրճիթում և երևի կիմանաս, թե որտեղից կարելի է մեծ գրպաններով շալվար ճարել:



—Հի՛, հի՛, հի՛, տես, թե ի՞նչ է ուզում,— ծվծվաց Մըկնիկը:—Ինչի՞ս է պետք շալվարը: Ես մի կտոր շաքարն ու



պանիրը չեմ փոխի էդպիսի շալվարի հետ, հասկանո՞ւմ ես: Հի՛, հի՛, հի՛, իսկ շալվարի մասին ինձ ոչինչ հայտնի չէ:

Մկնիկն այս ասելով ծլկեց ու մտավ տնակի հատակի տակ: Իսկ Խլուրդը մի անգամ էլ նայեց պարանից կախված շալվարին և տխուր հեռացավ: Քիչ հետո Թիթեռնի-





կին տեսնելով, խլուրդը վազեց նրա հետևից:

— Թիթեռնի՛կ, կանգնի՛ր, Թիթեռնի՛կ: Դու թռչում ես վերևից և շատ բան ես տեսնում: Գուցե դու՞ գիտես, թե որտեղ կարելի է մեծ գրպաններով շալվար ճարել: Մի՛ հեռացիր, օգնիր ինձ, խնդրում եմ, ախր ես շատ եմ ուզում շալվար ունենալ:





Իսկ Թիթեռնիկը կարծես չէր էլ լսում նրան, շարունակում էր թռչել իր համար: Խլուրդը վազեց Թիթեռնիկի հետևից՝ աչքը գցած նրա գույնզգույն թևերին և հանկարծ...շրը՛մփ, ընկավ ջրի մեջ: Նա չէր նկատել, որ այդտեղով առվակ է հոսում:

Մագլցելով մի քարի վրա, նա սկսեց փռշտալ:







Այս ո՞վ է աղմկում այստեղ.— բարկացավ Խեցգետինը:

Մի՛ բարկացիր քե՛… քեռի՛ Խեցգետին, պատահմամբ ստացվեց…Դուք չգիտե՞ք, թե որտեղից կարելի է գրպաններով շալվար ճարել:

Դու, բարեկամս, կտոր բեր, և ես քեզ համար շալվար կձևեմ: Ահա և բոլորը: Դրա համար աղմկելու հարկ չկա:

Խլուրդը մի անգամ էլ փռշտաց, ուզեց Խեցգետնից շնորհակալություն հայտնել, բայց ծեր վարպետն արդեն թաքնվել էր քարի տակ:



Խլուրդը քարի վրայից ցած թռավ և վազեց դեպի եղեգնուտը: «Եղեգնահավն իր համար կարողանում է բույն հյուսել, գուցե կարողանա ինձ համար շալվար կարել»— մտածեց նա:

— Լա՛վ, ես քեզ համար շալվար կկարեմ,— ասաց Եղեգնահավը, երբ Խլուրդը պատմեց իր դարդը,— միայն թե դու ձևած կտոր բեր:

— Ի՞նչ անեմ ես,— սկսեց լաց լինել Խլուրդը,— ինչպե՞ս անեմ: Խեցգետինն ուզում է շալվար ձևել, Եղեգնահավը՝ կարել, իսկ որտեղի՞ց կտավ ճարեմ:

— Մի՛ լաց, Խլուրդիկ,— հանկարծ ասաց մի ծաղիկ:— Ես քեզ կարող եմ օգնել: Իմ անունը Վուշ է և, եթե իմ ասածներն անես, դու շալվար կունենաս: Նայիր ինչքա՜ն մոլախոտ կա իմ շուրջը, ինչքա՜ն բզեզներ կան: Քաղհանիր մոլախոտը, բզեզներին քշիր, այն ժամանակ ամեն բան լավ կլինի:

— Ի՜նչ լավ է, — ուրախացավ խլուրդը, — ես շալվար կունենամ:

Եվ սկսեց մոլախոտը քոքահանել, փշերը հեռացնել և բլեկներին քշել:



— Ես ծարավ եմ, շա՜տ ծարավ եմ, խլուրդիկ, օգնիր ինձ, ջուր բեր և ջրիր իմ արմատները:

Այսպես, խլուրդն սկսեց ջրել Վուշի արմատները:

Մի օր էլ Վուշն ասաց.



— Ես արդեն հասել եմ: Ես հիմա քեզ կասեմ, թե էլ ինչ պիտի անես, որ գրպաններով շալվար ունենաս:

Խլուրդը նրա բոլոր ասածներն արեց: Նախ Վուշի ցողուններն արմատից հանեց և գնաց աղբյուրի մոտ, ուր մարգագետնի վրա նստած էր մի գորտ:

— Կը՛ռ, կը՛ռ, — կարմացավ Գորտը: — Այդ ի՞նչ ես տանում:

— Գնում եմ Վուշը թրջելու: Նրանից կտավ կգործեմ, հետո կտամ Խեցգետնին, Խեցգետինը կձևի, հետո կտանեմ Եղեգնահավին, Եղեգնահավը ինձ համար գրպաններով շալվար կկարի:



— Կը՛ռ, կը՛ռ. այդ դեպքում ես քեզ կօգնեմ. ես տեսել եմ, թե ինչպես են Վուշը թրջում:

Երբ խլուրդը Վուշը թրջեց ու չորացրեց, շալակն առավ ու գնաց Արագիլի մոտ:

— Քեռի Արագի՛լ, քեռի Արագի՛լ:

— Կո՛տ-կո՛տ,  ասաց Արագիլը.– ինչու՞ ես ինձ կանչում, խլուրդ, ի՞նչ ես ուզում:

Բարի եղիր, քեռի Արագիլ, տրորիր Վուշի ցողունները, ինձ գրպաններով շալվար է պետք:

— Գրպաններով շալվա՞ր, ասում ես, լա՛վ, ես քեզ կօգնեմ:

Արագիլն իր երկար կտուցով տրորեց Վուշի ցողունները, որ թելը դուրս գա:

— Շնորհակալություն, քեռի Արագիլ,—ասաց խլուրդն ու գնաց Ոզնու մոտ:



— Ոզնիկ, սիրելի Ոզնիկ, թույլ տուր Վուշի ցողուն-ները գզեմ, քո ասեղների վրա: Ես գրպաններով շալվար եմ ուզում ունենալ:

— Լավ, միայն շուտ արա, թե չէ ես նորից կքնեմ, — ասաց Ոզնին հորանջելով:

Խլուրդը վուշը գզեց ու վազ տվեց սարդերի մոտ:

— Սարդիկներ, սիրելի սարդիկներ, — ձայն տվեց նա, — առեք իմ գզած վուշը և թել մանեք: Ինձ գրպաններով շալվար է պետք:

— Գրպաններո՞վ, ասում ես, լա՛վ, մենք քեզ կօգնենք:

Եվ սարդերն սկսեցին վուշից թել մանել, Խլուրդը վերցրեց մանած թելն ու գնաց Հավամրգու մոտ:

— Քաղցրիկ Հավամրգի, կապույտ Հավամրգի, ես ուզում եմ գրպաններով շալվար ունենալ, խնդրում եմ ներկիր իմ թելը:

Հավամրգին Խլուրդի թելը կապույտ ներկեց, իսկ





բզեզները ու մրջյունները կապույտ կտավ հյուսեցին։ Խըլուրդը կտավը տարավ Խեցգետնի մոտ, Խեցգետինն իր մկրատներով շալվար ձևեց։ Հետո նա ձևած կտորը Եղեգնահավի մոտ տարավ, սա կարեց մեծ-մեծ գրպաններով





սիրունիկ մի շալվար: Այնքա՜ն սիրուն, այնքա՜ն լավ, որ Խլուրդիկը քիչ մնաց խելքը թռցներ:

— Ա՜խ, ի՜նչ սիրուն շալվար է,— ասում էր նա,— իսկ գրպաննե՜րը... իմ ամբողջ հարստությունը ես կտեղավորեմ նրանց մեջ՝ գնդակը, մեխերը և հայելին:

Հապա մի նայեմ ինձ հայելու մեջ.

—Լա՜յ, լա՜յ, լա՜յ-ի՜նչ սիրուն շալվար է, ի՜նչ լավ գրպաններ են...



ՀՈՒՆԻՍ
№ 6 1960 Թ.




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ — ՄԱՆՈՒԿՅԱՆ ՌՈՒԲԻԿ (7 տարեկան)

## Մեր սրահի ծիծեռնակը

Տարիներ առաջ՝ մեր սրահի օնորքին բուն էր դրել մի ծիծեռնակ։ Այն ժամանակ ես դեռ փոքր էի։ Ամեն առավոտ, երբ զարթնում էի քնից, դեռ երեսս չլվացած, վազում էի սրահ, նայում բնին և ուրախանում։ Այնուհետև հավաքվում էինք ընկերներով, կանգնում բնի ներքևում և դիտում, թե ինչպես է մայր ծիծեռնակը կերակրում ձագերին։ Ամեն անգամ, երբ մայրը որսը կտցին, մոտենում էր բնին և մի փոքր ձայն հանում, ձագերը բերանները բաց դուրս էին նայում բնից. մենք կարծում էինք, թե ահա ուր որ է նրանք կընկնեն... Ուրախությունից թռչկոտում էինք, բայց իզուր։ Ծիծեռնակը մտնում էր բույնը, և ամեն ինչ նորից խաղաղվում էր։

Այդպես, անցնում էին օրեր. ձագերը մեծանում էին և աշնան վերջին ամսին իրենց մոր հետ թռչում տաք երկրներ։ Ծիծեռնակի չվելը վիշտ էր պատճառում, ինչպես ինձ, ընկերներիս, այնպես էլ՝ մորս։ Եվ ես, երբ ամեն առավոտ աչք էի գցում ծիծեռնակի բնին, մայրս էլ ինձ հետ տխրում էր ու ասում.

— Մեր ընտանիքի անդամներից մեկը թռավ։

Իսկ երբ նորից բացվում էր գարունը, երբ վերադառնում էր մեր սրահի ծիծեռնակը.

— Մեր ընտանիքի անդամներից մեկը վերադարձավ,— ասում էր մայրս, ուրախանում և կուչ գցում բնի մոտ:

Մի անգամ էլ, երբ ծիծեռնակը թռավ, մեր տունը նորոգեցինք. մի փայտ դիպավ ծիծեռնակի բնին, ու բույնը ընկավ: Գարնանը, երբ ծիծեռնակը վերադարձավ, բույնը ավերակ գտավ, նա երկու պտույտ գործեց մեր սրահում, երկու անգամ նվնվաց և հեռացավ:

Այն օրից, երբ ծիծեռնակ եմ տեսնում, կարծում եմ, թե մեր սրահի ծիծեռնակն է, որ մեզանից խռովեց, գնաց ու էլ չվերադարձավ:

ԱՐԿԱԴԻ ԱՌԱՔԵԼՅԱՆ
(Ղափանի շրջան, Սեքար գյուղ)

# ՀԱՅԱՍՏԱՆ



Իմ արևաշատ Հայաստան երկիր,
Դու Հոկտեմբերի լուսեղեն ծնունդ,
Ճակատդ զուգած պսակով փառքի,
Քայլում ես դեպի բարձունքները լուրթ:

Շուտով քո տոնն է, տոնը խնդության,
Ես ի՞նչ ուղարկեմ քեզ նվեր ինձնից...
Ա՛ռ կարոտակեզ սիրտս մանկական
Այս խնդակարկաչ երգիս հետ անբիծ:

ՌՈԲԻՆԶՈՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ
(Ախալքալակի շրջան, Բալխո գյուղ)

ՊԵՏՐՈՍՅԱՆ ՌՈՒԲԻԿ (12 տարեկան)



ԱՐԱՐԱՏՅԱՆ ԴԱՇՏ

ՊՈՂՈՍՅԱՆ ՍԵՐԺԻԿ (7 տարեկան)

ԳԱՐՆԱՆ ԳՈՎՔԸ



ՁԻԼԻՆԳԱՐՅԱՆ ԿԱՄԻՍ
(12 տարեկան)

## ՁՄԵՌՆԱՄՈՒՏ

Ծեր անտառում՝ կար մի արջ,
Տոտիկներով բրդոտ ու կարճ,
Մտն էր գալիս՝ գտնի մի որջ,
Որ անցկացնի ձմեռն ամբողջ:

Չէ՞ որ շուտով ձմեռ կգա,
Ձյուն կպատի անտառն ամբողջ.
Իսկ թե որջի մասին հոգա,
Նա կմնա ողջ ու առողջ:

ԳԱՌՆԻԿ ՊՈՂՈՍՅԱՆ

(Ալավերդու շրջան)

# ԱՆՏԱՌԻ ԱՆԴՈՐՐԸ

Անտառի վրա մշուշն է լողում,
Վտիտ ճյուղերին եղյամն է դողում,
Թփերն են զուգել գանգուրները ծյան.
Անտառն է գրկել շունչն անդորրության.
Ձեն ցնցվում, դողում փափուկ ձյունի տակ,
Ոչ սոճին, ոչ էլ եղևնին շիտակ...
Եվ անտառն այսպես կմնա խաղաղ,
Մինչև որ բացվի գարունը չքնաղ։






Միշտ ետ ու առաջ, միշտ ետ ու առաջ,
Քայլում է մռայլ վանդակում...
Նիհար է, մորթին կողերին թափված,
Ուժասպառ է նա և անքուն։

Միշտ ետ ու առաջ, միշտ ետ ու առաջ,
Մարդկանց է խժռում հայացքով,
Բայց նա պարտված է, աչքերն են վառված
Ջայրույթի անզուսպ կրակով։

Ո՛չ մռնչում է, ո՛չ փնչում հիմա,
Վանդակում անզոր թափառում է նա։

ԴԱՎԻԹ ՆԻԿՈՂՈՍՅԱՆ



«ՓԻՍԻԿԻ ԴԱՆԴԱՏԸ» ՖԱՐՄԱՆՅԱՆ ՍՈՒՐԻԿ (12 տարեկան)

# ՏՂԱՆ ԵՐԿԱԹԵ ՑԱՆԿԱՊԱՏՆԵՐԻ ՓՈՂՈՑՈՒՄ

ՀԱՅԿ ՎԱՐԴԱՆՅԱՆ



Մայթի վրա, երկաթե բարձր ցանկապատի մոտ, խաղում էր մի տղա:

Դժվար էր ժամեր շարունակ խաղալ քարերով, բայց տղան մեկը մյուսից ավելի հետաքրքիր խաղեր էր հորինում: Նույնիսկ մեկ քարով նա կարողացավ մի այնպիսի լավ խաղ հնարել, որ ուրիշներն էլ հետաքրքրությամբ կխաղային: Բայց, ինչպես որ խելացի խաղի ժամանակ է լինում, պետք էր երբեմն էլ դադարեցնել խաղը և նայել չորս կողմ: Նույնիսկ երկաթե ցանկապատից ներս, բակում կանգնած, սպիտակ ու մեծ տանը: Եթե նա շարունակ տարված լիներ միմիայն խաղով, կարելի էր կասկածել, որ նա հետևում է մեծ տան անցուդարձին:

աղյուսաշեն տան անկյունից, երբեմն նրան էր նայում մի աղջկա անհանգիստ գլուխ: Տղան նրա վրա ուշադրություն չէր ուզում դարձնել, բայց ակամա, երբ աչքի տակով նկատում էր պատի հետևից հայտնվող գլուխը, կիտում էր հոնքերը:

Արդեն երրորդ ժամն էր, որ տղան նստած էր այդտեղ: Տան անկյունում թաքնված աղջիկը, դառնում էր ավելի անհամբեր և երևում էր գրեթե ամբողջ հասակով:

Ի վերջո տղան համբերությունից դուրս գալով վեր կացավ և բարկացած մոտեցավ աղջկան.

— Չէ՞ որ քեզ ասել եմ մի նայիր:

— Բայց դու ոչ մի նշան ցույց չես տալիս, — բողոքեց աղջիկը:

— Ցույց չեմ տալիս, որովհետև դեռ ոչ ոք չի եկել: Դեռ շուտ է:

— Լավ էլ չեմ նայի, — ասաց աղջիկը:

Տղան վերադարձավ: Արևն արդեն մայր էր մտնում: Փողոցը լցվում էր անցորդներով, տղան դեռ շարունակում էր խաղալ մայթի վրա, երկաթե ցանկապատի տակ, իսկ աղջիկը այլևս չէր երևում:

Նրանք երկաթե ցանկապատների փողոցն էին եկել ամենակարևոր գործով: Այդ օրը երեկոյան աղջիկը հրավիրված էր իր դասընկերուհիներից՝ Մոհթադիների տանը: Նրա համար գնել էին նոր շրջազգեստ և կարել էին չթե շրջազգեստ: Բայց ոչ հայրիկը, ոչ մայրիկը, ոչ էլ ինքը՝ աղջիկը կամ էլ նրա փոքր եղբայրը, չգիտեին, որ ժամից է երկաթե ցանկապատների փողոցում սկսվում երեկոն, չորսից, հինգից, վեցից, թե՞ յոթից:

Չորրորդ ժամն էր, որ նրա եղբայրը այդ տան առաջ նստած, սպասում էր առաջին հյուրերին, իսկ ինքը՝ եղբոր ազդանշանին:

Երևաց գլխին կլոր ու մեծ սկուտեղ դրած, ապակու նման թափանցիկ քաղցրավենիներ բերող մի բեռնակիր, որը դարբասների համարներն էր զննում.

— Էհե՜յ, — գոռաց տղան, — այս տանն են տարեդարձ կատարում:

Գլխին կլոր սկուտեղ դրած բեռնակիրը, կոնքերը

օրորելով մոտեցավ, հրեց դարպասը և ներս անցավ:

Աղյուսաշեն տան անկյունում, նորից, ամբողջ հասակով մեկ երևաց աղջիկը: Տղան բարկացած ոտքի ցատկեց, վազեց դեպի քույրը և գոռաց.

— Դու ամեն ինչ կփչացնես... Նրանք կնկատեն քեզ:

— Կարծեմ քաղցրեղեն բերին:

— Մե՜ծ բան, -հանդիմանեց եղբայրը,—տե՛ղդ անցիր:

Փողոցն արդեն լցվում էր անցորդներով:

— Է՜յ... ի՞նչ կա...

Տղան բարձրացրեց գլուխը և տեսավ հորը: Ուստա Քազեմը սովորաբար աշխատանքից այդ ճանապարհով չէր վերադառնում, բայց այդ օրը Մոհթադիների տան մոտով անցնելու համար, նա երկարացրել էր ճանապարհը և Շահ-Աբբասյով էր տուն գնում: Տղան նայեց իր փոքրակազմ ու քաղցած հորը և ասաց.

— Քիչ առաջ ահագին քաղցրեղեն ներս տարան:

Հայրը ուզում էր թուքը կուլ տալ, բայց մտածեց, որ այդ կարող էր տղան նկատել, անհասկանալի մի շարժում արեց ու շրջվեց:

— Դե՛, ես գնացի.—ասաց նա և, սև ու բարձր ցանկապատների միջից, զննելով սպիտակ ու մեծ շենքը, դանդաղ սկսեց հեռանալ: Հետո, երբ նա արդեն հեռացել էր հիշեց, որ շատ լավ ու տեղին կլիներ եթե ինքը օգտագործելով առիթը, խրատական խոսքեր ասեր տղային. «Եթե լավ սովորես, ինքդ էլ մ՛յ, այսպես հարուստ ու ունևոր կյանք կունենաս»: Դա անպայման մեծ օգուտ կտար որդուն: Բայց ուշ էր: Հետո նա այդ խրատը ուզեց տալ փողոցի անկյունում սպասող իր աղջկան, բայց հիշեց, որ աղջիկը գերազանց սովորող էր, նայեց նրա մաշված դեմքին, բարակ ու երկայն թևերին և մտածեց, որ իր խրատը աղային էլ ոչ մի օգուտ չէր բերելու, տխրեց, որ ինքը որպես հայր ոչնչով չէր կարող օգտակար լինել իր երեխաներին, տխրեց ու տուն գնաց:

Արևն արդեն մայր էր մտել, երբ տան դարպասի առաջ կանգ առավ առաջին ավտոմեքենան, որից ուրախ աղմկելով ցած թափվեցին մի քանի երեխաներ ու թռչկոտելով ներս անցան: Անկյունում, պատի հետևից, նորից ամբողջ հասակով մեկ երևաց աղջիկը. տղան ձեռքով նշան արեց, և աղջիկը արագ քայլերով, չթե նոր շրջազգեստը հագին, որից դեռ գալիս էր չլվացված կտորի թարմ և յուրահատուկ հոտը, արագ անցավ եղբոր մոտով: Դարպասի մոտ, նա անվճռականորեն կանգ առավ:

— Ներս գնա, ասաց տղան:

Աղջիկը հրեց դուռը և ներս անցավ: Տղան տեսավ ինչպես իր քույրը արագ քայլերով անցավ աղյուսապատ բակով, շրջվեց վարդենիների կողքով և ինչ-որ բանից կարծես ահաբեկ, անհետացավ տան մուտքի մեջ:

Տղան շունչը պահած մի քիչ սպասեց, ապա թեթևացած ու գոհ սկսեց զբոսնել ցանկապատի մոտ: Ներսում սպիտակ ու մեծ տան մեջ զվարճանում էր իր քույրը: Դուրսը սկսվել էր ամառային երեկոն, ինքը ազատ էր, հայրիկն ու մայրիկը գիտեին, թե ուր է նա: Նրան պատել էր հազվադեպ մի բերկրանք, խաղաղ անհոգություն. Նա տաս տարեկան էր և կյանքում գուցե առաջին անգամ իր տարիքի մեջ էր զգում իրեն: Նա երբեք այդքան երջանիկ չէր եղել: Հիմա նա երեխա էր, իսկական տասը տարեկան երեխա: Նրա մեջ ամեն ինչ իր տեղումն էր, ինչպես ճիշտ չափով կարված նոր ու գեղեցիկ կոշիկը: Նա արդեն չէր քաշվում հյուրերից, որոնք այնպես լավ գիտեին ներկայանալու ժամը և գալիս էին ոտքով կամ ավտոմեքենայով: Հյուրերի աղմուկն ու ծիծաղը, բակում աստիճանաբար հեռանում, վերածվում էր շշուկների, ձուլվում էր վարդենիների արձակած բուրմունքին ու իր թեթև և երջանկաբեր բույրը տարածում էր ցանկապատից դուրս: Տղան անշարժ, ցանկապատի ձողերից բռնած, նայում էր դեպի բակը: Նա՛ մեծ հաճույքով տեսավ ինչպես է մթնում,*ինչպես են



Նկ. Գ. Ր. ԽԱՆՋՅԱՆԻ

վառվում էլեկտրական լույսերը, և ինչպես միանգամից լուսավոր քառակուսիների են վերածվում պատուհանները, ինչպես են առաջանում ստվերները, ու ինչպես թեթև զեփյուռից աղմկում են բարդիները: Ու նա որոշեց, որ դրանից հետո, միշտ, ամեն երեկո, կդիտի այդ բոլորը. ու նա անհուն երջանկություն զգաց,՝ մտածելով, որ այդ ամենը կրկնվելու է միշտ, անվերջ:

Բակում շարունակ եռուզեռ էին անում տան սպասավորն ու սպասուհին. Նրանք վազվզում, մեկը մյուսից ետ չմնալով, դեպի ջրամբարն էին իջեցնում կեղտոտված ափսեներն ու ամանեղենը. ապա լուսամուտից դուրս ընկնող լույսի ցոլքում, մաքուր ու փայլեցրած ետ էին տանում: Վեր էին բարձրացնում սառեցրած լիմոնադի շշերը... Վերնահարկի լուսավոր պատուհանների միջից դուրս էր թափանցում երաժշտությա՛ն ու ծիծաղի ձայները: Երեխաներից մեկը սկսեց արտասանել: Ուսանավորը ծանոթ էր, տղան ինքն էլ ոգևորված սկսեց շշնջալ... Բայց բնազդաբար լռեց, լսելով ծանոթ ոտնաձայն՝ չստերի քտքտոցը: Նա չէր սխալվել: Բավական մոտից, նա նկատեց քրոջը, ձեռքին դույլերը բռնած:

— Է՜յ, դու՛, աղջիկ.—լսվեց սպասավորի ձայնը,—ջրամբարն այն կողմն է:

Տղան քարացած նայում էր քրոջը. նա ուզեց ինչ-որ բան ասել, բայց միայն շարժեց շրթունքները: Քիչ անց, երբ աղջիկը դույլերը լցրած, հևալով դուրս էր գալիս ջրամբարից, լսեց եղբոր ձայնը.

— Սպասի՛ր...

Աղջիկը զարմացած ու ամոթխած կանգ առավ: Նա ուզում էր, արագ, վարդենիների հետևը անցնել, բայց չհասցրեց:

— Սպասի՛ր... Ցա՛ծ դիր դույլերը... ցա՛ծ դիր, քեզ ասում եմ:

Աղջիկը անշարժ էր:

— Ցա՛ծ,—գոռաց տղան:

Աղջիկը շտապ ցած դրեց դույլերը:

— Գնա՛նք,—ցանկապատի միջից հրամայեց տղան, -գնա՛նք,—գոռալով կրկնեց նա:

— Սպասի՛ր,—խնդրեց աղջիկը,—ես դեռ ոչինչ չեմ կերել...

— Դուրս արի, թե չէ քարով ապակիները կջարդեմ:

Քույրը արագ փողոց դուրս եկավ. տղան հեռանում էր:

— Սպասի՜ր, սպասի՜ր,—աղերսում էր քույրը:

Տղան չէր պատասխանում: Երկաթե ցանկապատների առջևից, առա՛նց պատասխանելու քրոջը, արագ քայլում էր նա չէր կարող խոսքերով ասել այն, ինչ զգում էր: Նա դեռ փոքր էր, չնայած այդ ժամին նա իրեն այլևս տասը տարեկան երեխա չէր զգում: Բայց էլի շատ էր փոքր ասելու համար ա՛յն, ինչ զգում էր այդ պահին:




Աշխարհագրական խմբակի օրագիր

*ՅՈՒ. ՄԱՐՅԱՆ*



## ՌԵԼՍԵՐԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ

1960 թվականի մայիսի 8

*Այսօր ընկեր Պետրոսյանն ասաց, որ այժմ, երբ այդքան քիչ է մնացել ուսումնական տարեվերջին, պետք է ավելի լավ պատրաստել դասերը: Եվ ահա մենք որոշեցինք հետևյալ կիրակի երկաթուղով մեկնել դեպի Հրազդան, իսկ հետո մի պարապմունք էլ ունենալ և այլևս ոչինչ չանել մինչև ամսի վերջը:*

*Խմբակի ավագ՝ ԱՐՄԵՆ ԱՂԱՎԵՐԴՅԱՆ*

1960 թվականի մայիսի 16

*Երեկ եղանք Հրազդանում: Այս անգամ մեկնեցինք ոչ թե ավտոբուսով, այլ գնացքով: Առաջ մեզանից ոչ ոք այդ երկաթուղով տեղ չէր գնա-*

ցեր, դրա համար էլ ամեն ինչ շատ հետաքրքիր էր։

Մենք դուրս եկանք հենց այն կայարանից, որտեղից գնացքները մեկնում են Թբիլիսի, Բաքու, Մոսկվա և այլ քաղաքներ, բայց շարժվեցինք ոչ թե նույն, այլ հակառակ ուղղությամբ։ Սկզբում գնացքը անցնում էր ողջ քաղաքի միջով, այնուհետև ճանապարհն սկսեց բարձրանալ ավելի ու ավելի վեր։ Շուտով ամբողջ քաղաքը փռված էր մեր աչքերի առջև, ասես ափի մեջ լիներ…

Ճանապարհն անցնում է գեղեցիկ տեղերով. մերթ ձորերի մեջ բացված նեղ միջանցքով, մերթ էլ Նորքի կանաչ անտառների ու այգիների և Հաղթանակի զբոսայգու միջով։



Ապա մենք անցանք 26 կոմիսարների անվան ջրչափի գործարանների ու բնակելի շենքերի մոտով և դուրս եկանք քաղաքից։ Մի քանի տեղերում երկաթուղուց գծեր են ձգվում տարբեր գործարաններ ու ֆաբրիկաներ, իսկ մի տեղ գիծը գնում է դեպի մի բոլորովին նոր ավան։ Ընկեր Պետրոսյանից մենք իմացանք, որ այդտեղ աղի հանքեր են։ Աղի պաշարն այստեղ այնքան շատ է, որ շուտով տարեկան հանույթը կկազմի 200 հազար տոնն։

Դրանից հետո մեր գնացքը կանգ առավ «Աբովյան» կայարանում։ Այդպես է կոչվում, որովհետև այն գտնվում է Քանաքեռում, որտեղ ծնվել է Խաչատուր Աբովյանը։

Մի քիչ էլ անցնելուց հետո մենք տեսանք այն խողովակները, որոնցով ջուրը Արզնիից եկավ Երևան։ Մենք տեսանք նաև խաղողի այգիներ և շատ զարմացանք։ Բայց ընկեր Պետրոսյանն ասաց, որ այժմ խաղողի այգիներ ունենք ոչ միայն Արարատյան դաշտավայրում, այլև լեռնային վայրերում։ Այստեղ աճում են խաղողի հատուկ տեսակներ, որոնցից շամպայն գինիներ են պատրաստում։

Շուտով մենք հասանք Էլար։ Սա մեծ կայարան է, ունի շոգեքարշային դեպո, վագոնային պարկ, զանազան բեռների շատ պահեստներ։

ԱՐԱՄ ՍԱՐԳՍՅԱՆ

Էլարից հետո ահա թե ինչ եղավ։ Նախ մենք տեսանք Արզնի առողջարանի ձորը, բայց գեղեցիկ կայարանը։ Ապա անցանք մի շատ տարօրինակ թունելի մոտով։ Լեռը կտրել են, և կտրված տեղը այնպես սպիտակ է, որ աչք է ծակում։ Պարզվեց, որ այստեղից հանում են պեմզային ավազ, որը շատ պետք է կառույցների՝ բետոն պատրաստելու համար։ Տեսանք նաև մի մեծ ջրամբար։ Դա) Գյումուշի ջրամբարն էր։

Բոլոր տեղերն էլ շատ հետաքրքիր են։ Ճանապարհը մերթ անցնում է Հրազդանի գետափով, մերթ կիրճով, մերթ էլ բարձր հողաթմբի կամ կամուրջի վրայով։

Հետևյալ կայարանը Լուսավանն էր։ Այդ մասին ոչինչ չեմ գրի, որովհետև Սեդա Միրզոյանը մանրամասնորեն գրել է օրագրում, երբ ավտոբուսով եկել էինք Լուսավան։

Եվս երկու-երեք փոքր կայարան և ահա հասանք Հրազդան քաղաքը։ Այդ մասին նույնպես կա օրագրում, ես ինքս եմ գրել։ Հրազդանից այն կողմ առայժմ երկաթուղային ճանապարհ չկա։ Բայց ընկեր Պետրոսյանը խոսեց մի ինժեների հետ, և մեզ ավտոմեքենա տվեցին, լավ գնացինք նայելու Սևան տանող երկաթուղային շինարարությունը։

ԳԱՐԵԳԻՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ



Շինարարությունն արդեն ավարտվում է: Հրազդան գետի վրա կառուցված է մի մեծ կամուրջ: Պատրաստ են նաև ուրիշ, փոքր կամուրջներ, կայարաններ, բնակելի տներ:

Մեզ ուղեկցող ինժեները պատմեց, որ երկաթուղով Երևանից մինչև Սևան ընդամենը 85 կիլոմետր է, բայց այդքան տարածության վրա ճանապարհը բարձրանում է հազար մետրով: Այդ ճանապարհը կառուցելու համար հարկ է եղել քանդել և տեղափոխել մոտ երեք միլիոն խորանարդ մետր քար ու հող: Բացի այդ, կառուցվել է 125 կամուրջ և տարբեր տեսակի բետոնե շինություն, տասը կայարան:

Սրանով վերջացավ մեր էքսկուրսիան: Վերադարձին նորից գնացք նստեցինք:

ԱՆԱՀԻՏ ԿԱԿՈՍՅԱՆ

1960 թվականի մայիսի 22

Այսօրվա պարապմունքը շատ կարճ տևեց: Այդպես ստացվեց, որովհետև դրված էր միայն իմ զեկուցումը, և այն էլ համառոտ: Ինձ հանձնարարել էին նյութեր հավաքել այդ երկաթուղագծի ապագայի վերաբերյալ: Երկար խոսելու հարկ չեղավ: Ամենագլխավորն այն է, որ շուտով գնացքները կհասնեն Սևան: Հետո ճանապարհաշինարարությունը կշարունակի Դիլիջանի, ապա Աղստաֆայի ուղղությամբ: Մոտակա տարիներին այդ ճանապարհը նաև կէլեկտրիֆիկացվի, և շոգեքարշների փոխարեն գիծ դուրս կգան էլեկտրաքարշերը: Ահա և այդ ճանապարհի ամբողջ ապագան

Ես մի քանի խոսք ասացի նաև դրա նշանակության մասին: Երկաթուղային այս ճանապարհը շատ կարևոր է: Մենք արդեն գիտենք, որ Լուսավանում, Հրազդանում և ռեսպուբլիկայի այդ մասի ուրիշ վայրերում կառուցվում են շատ գործարաններ: Երկաթուղով այստեղ բերվում են շինանյութեր, իսկ հետո կտանեն այն ամենը, ինչ կսկսեն արտադրել այդ գործարանները:



Դրանից բացի, վագոններով կփոխադրեն այս տեղերի օգտակար հանածոները: Մարդատար գնացքներ նույնպես շատ պետք են: Չէ՞ որ այստեղ օրեցօր ավելի ու ավելի է մեծանում ազգաբնակչության թիվը, այստեղ են գտնվում նաև մեր խոշոր առողջարաններից, հանգստավայրերից ու պիոներական ճամբարներից մի քանիսը:

ՍԵԴԱ ՄԻՐԶՈՅԱՆ

# ԳԵՏԱԿԸ

Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆ

Բարձր սարերից,
Զով անտառներից
Մարմարիկ վարար գետակն է իջնում,
Անուշ խոխոջով,
Ջրվեժ կարկաչով
Պտույտներ տալիս, ծորակով փախչում:
Ամեն կեսօրի
Գետը բոլորին
Իր գիրկն է կանչում ծափով-ծիծաղով.
Ո՞վ չի ցանկանա,
Ծոցին լողանալ,
Հիանալ՝ ջրում ձկների խաղով:
Է՜յ, վախկոտ տղա,
Իզուր մի դողա,
Սովորիր լողալ, թե չէ հո գիտե՞ս,
Երբ որ մեծանաս,
Լողալ չիմանաս,
Լողորդ բադիկն էլ միշտ կծաղրի քեզ:



Նկ. Հ. ՍԻՐԱՎՅԱՆԻ

# Ա՜խ, ՏԱՏԻ՛Կ, ՏԱՏԻ՛Կ...

ԱՐՍ. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Իմ տատիկին չե՞ք ճանաչում։ Ո՞չ։ Չի կարող պատահել։ Տատիկին բոլորն են ճանաչում, թեև բոլորն էլ նույն ձևով չեն կանչում նրան։ Մեկն ասում է «Հայկանուշ մորաքույր», մյուսը՝ «Հայկանուշ հորաքույր», ուրիշները՝ «Հայկանուշ քեռակին», «Հայկանուշ մայրիկ», իսկ մեր հարևան բժիշկ Գեվորգյանը, երբ տեսնում է տատիկիս, հանում է լայնեզր գլխարկը ու ասում.

— Ողջույն, տիկին Հայկանուշ, առողջությունդ ինչպե՞ս է։

Ու միայն ես եմ, որ իմ տատիկին, պարզապես «տատի» եմ ասում։

Շատ բարի ու հետաքրքիր տատի է իմ տատիկը։ Ասում եք բոլոր տատիկներն էլ այդպիսի՞ն են։ Չգիտեմ, բայց իմ տատին շատ հետաքրքիր տատի է։ Օրինակ, ասենք թե Նախօրյակին հայրիկս շատ խնձոր է բերել ու դրել մառանում, չէ՞։ Դե, ասենք, եթե ուզենամ, չե՞մ կարող ասել.

— Մայրիկ ջան, ինձ խնձոր տուր։ Կամ, տատի ջան, խնձոր եմ ուզում։

Կարող եմ, չէ՞։ Իհարկե, կտան։

Բայց տատիկս... Նա մեկ էլ ինձ աչքով-ունքով մի կողմ է կանչում, համբուրում է թշերս ու ասում.

—Հիմա տես տատիկդ քեզ ինչ է տալու, ինչ է տալու։

— Ի՞նչ ես տալու, տատի ջան,—անհամբերությամբ հարցնում եմ ես, թեև գիտեմ, որ անպայման խնձոր է տալու։

— Այ թե ինչ եմ տալու,—ասում է տատիկս, ու ինչ-որ թաքուն գրպանից (այդպիսի գրպաններ նա շատ ունի և, ճիշտն ասած, մինչև հիմա էլ չգիտեմ դրանց տեղը) հանում է մի փոքրիկ, վառ կարմիր խնձոր ու մեկնում է ինձ։

— Կե՛ր,—ասում է, Ասլան ջան։

Ասլանը այդ ես եմ։ Ճիշտ է, տանը բոլորն ինձ Ասո են կանչում, բայց տատիկս՝ չէ։ Նույնիսկ բարկանում է.

— Դու Ասլան ես,—ասում է,—ողորմածիկ քո պապի անունն էլ էր Ասլան։ Հետո տատս միշտ ավելացնում է,—քո պապն էլ էր քեզ նման լավ սովորում։ «Հայր-մերը» ջուր էր արել։

Առաջ ես չգիտեի, թե ինչ է նշանակում՝ «ջուր էր արել»։ Կարծում էի, թե շատ խորհրդավոր ու դըժվար բան է։ Հետո իմացա, որ դա մեր բերանացի անգիր սովորելն է։ Ծիծաղս գալիս է, ի՜նչ հետաքրքիր է, չէ՞, իմ տատին։

Բայց... բայց հիմա մի բան կասեմ, որ կզարմանաք։ Եթե ես պիոներ չլինեի, հիմա տատիկիս հետ խռոված պիտի լինեի։ Զարմացաք, չէ՞։

Մի դեպք... դե ոնց բացատրեմ, ասենք, թե ես ջրամանը ջարդեցի։ Ո՞վ է մեղավոր։ Ես, չէ՞։ Դե հիմա լավ լսեք, մի դեպք պատահեց, որ ես կարծում էի, թե միայն տատիկս է մեղավոր, բայց տատիկս չէր ընդունում, ասում էր՝ տերտերն է մեղավոր։ Իսկ հայրիկս ու մայրիկս ոչ ինձ էին մեղադրում, ոչ տատիկիս, ոչ էլ տերտերին։

— Մենք էինք մեղավոր,—ասում էին նրանք։

Դե, արի ու բան հասկացիր։ Դուք էլ չհասկացաք, չէ՞։ Ուրեմն հիմա ես կպատմեմ այդ դեպքը, դուք էլ ուշադիր լսեք։ Ո՞վ գիտե, գուցե ձեզ հետ էլ նման մի բան պատահի։

Ես ձեզ արդեն ասացի, չէ՞, որ չորրորդ դասարանում էի սովորում։ Նոր եմ փոխադրվել հինգերորդ դասարան։ Չե՞մ ասել։ Այ քեզ բան, իսկ ինձ թվում էր, թե ասել եմ։ Դե, ոչինչ։ Դուք կիմանաք երևի, թե ինչքան դժվար է չորրորդ դասարանում սովորելը։

Քննություններ... խոսքերով ասելը հեշտ է։

Իսկ այդ քննություններն արդեն մոտենում էին։ Մեր դասատուները միշտ ասում էին մեզ «երեխաներ, քննություններից չպետք է վախենալ։ Ճիշտ է, առաջին անգամ է, որ հանձնելու եք, բայց վախենալու ոչինչ չկա։ Սովորական դաս է»։





Եվ գիտե՞ք ինչ, ինչքան մեր դասատուները այդպիսի խոսքեր էին ասում, այնքան մենք ավելի էինք վախենում։

Ես սկսեցի պարապել, կրկնել անցածը, ինչպես ինձ սովորեցրել էին։ Ու թեև մեր դասարանի տղաներն ու աղջիկները երկու-երկու, երեք-երեք էին պարապում, բայց ես պարապում էի մենակ։ Չեմ սիրում, որ հավաքվում են ու սկսում են խոսել դեսից-դենից։ Միայնակ սովորելը լավ է։ Իսկ երբ դժվարանում էի, գնում էի Վաղարշակենց տուն՝ բացատրում էր։

Դրա համար էլ հայոց լեզվի գրավորից ստացա «5»։

Ուրախ-ուրախ տուն եկա, ուզում էի պատմել բոլորին, թե ոնց եղավ, բայց հայրիկս ու մայրիկս դեռ աշխատանքից չէին վերադարձել։ Գրկեցի տատիկիս։

— Տատի,— ասացի,— գերազանց ստացա։

— Բա ինչի՞ «5» չդրեցին,— հարցրեց տատիկս։

Այ քեզ զարմանալի տատի։

— «5»-ն էլ «գերազանցն» է, է՛լի, այ տատի,— ծիծաղեցի ես։

— Դե, լավ, լավ, թող քո ասածը լինի,— ասաց տատիկս, բայց ես զգացի, որ չհամոզվեց. մնաց-մնաց ու թե,— բա ինչու՞ ուրիշները «5» են ստանում, իսկ դու «գերազանց»։

— Նույնն է, նույնն է, տատի ջան,— կրկնեցի ես։ Իմ «գերազանց»-ը հենց քո ասած «5»-ն է։

— Բա խա՞չն ուր է։

— Ի՞նչ խաչ։

— «5»-ի կողքի խաչը։

— Խաչ չկա, խաչը վաղուց է վերացել,— ասացի ես։

— Իհարկե,— սաստիկ վիրավորվեց տատիկս,— հորիցդ, մորիցդ մի լավ բան չէիր սովորի։ Խաչն էլ՛ է վերացել...— տխուր ծոր տվեց նա,— տես էս երեխին ինչ են սովորեցրել։ Մեղա, մեղա քեզ, տեր աստված...

Ու էլ հետո չխոսեց։ Ափսեները խոհանոցում չխչխկացին։ Տատիկս արդեն մոռացել էր ինձ։ Հանեցի թվաբանության գիրքս ու սկսեցի սկզբից նորից կարդալ։ Երկու օր հետո թվաբանության քննությունն էր։ Մի քանի տող էի կարդացել, մեկ էլ տատիկս ձայն տվեց.

— Ասլա՜ն։

Ես գնացի խոհանոց։

— Մի տես քեզ ինչ եմ տալու,— ժպտաց տատիկս,— ինչ եմ տալու։

Ու գաղտնի գրպաններից մեկից հանեց «Խեցգետնի վզիկներ» տեսակի մի կոնֆետ, որ ես էի տվել իրեն անցած օրը, ու մեկնեց ինձ։

— Կեր, Ասլան ջան, դու այնքան նման ես քո օղորմածիկ պապին, նա էլ էր քեզ նման իր ասածի տերը,— ասաց նա։

Այ թե ինչպիսին է իմ տատիկը, իսկ ես՛ կարծում էի, թե «5»-ի խաչը մոռացել է...

Մյուս օրը նորից թվաբանություն էի պարապում, շատ դժվար էր։ Դե, ի՞նչ ասեմ, թվաբանությունը միշտ էլ ինձ համար դժվար՛ է եղել։ Ես թվաբանություն չեմ սիրում։ Գիրքը առջևս եմ դրել, գրում եմ խնդիրները ու մտածում, թե տեսնես ով է եղել այն մարդը, որ նստել և ուրիշներին տանջելու համար այսպիսի խնդիրներ է գրել։ Ու կարծես դիտմամբ՝ քանի գնացել, այնքան բարդացել է։ Խնդիր մեկ անհայտով, խնդիր երկու անհայտով...

— Էդ ի՞նչ ես քեզ ու քեզ խոսում, Ասլան ջան,— հարցրեց տատիկս, որ աթոռին նստած ինձ համար գուլպա էր գործում։

— Է, ինչ ասեմ քեզ, տատիկ,— տնքացի ես,— դժվար է։ Վաղը թվաբանության քննություն եմ տալու, վախենում եմ։

— Ուզու՞մ ես վախդ առնել տամ,— իսկույն անհանգստացավ տատիկս։

— Ինչ անե՞ս։

— Վախդ վերցնեմ,— ասաց տատիկս.— էնպես անեմ, որ չվախենաս։

— Ի՞նչ պիտի անես որ...

— Վայ, բա ինչու՞ ինձ շուտ չէիր ասում,— տատս տեղից վեր կացավ, գրպաններից մեկից մի կարկանդակ հանեց, ասեղով սկսեց ծակոտել ու հետն էլ ինչ որ խոսքեր ասել։ Միայն երկու բառ էի հասկանում, որ տատս միշտ կրկնում էր. «Չարքեր, կորեք»։



Այդպես մի քանի անգամ ծակելուց ու խոսելուց հետո, տատիկս կարկանդակը տվեց ինձ ու պահանջեց, որ անմիջապես ուտեմ։

Ճիշտն ասած՝ կերա։ Սովորական կարկանդակ էր։

— Դե, հիմա գնա ու խաղա,— կարգադրեց տատիկս։

— Իսկ խնդիրնե՞րը,— առարկեցի ես, թեև ուրախ էի, որ խաղալու էր ուղարկում։

— Քո գործը չէ,— ասաց տատիկս,— դու խաղա, իսկ ես գնամ տերտերի մոտ, քեզ համար գիր բերեմ։

— Բոլորը լուծած ունի՞,— ուրախացա ես։

Է, բարկացավ տատիկս,— քո գործը չէ։ Ես այնպիսի գիր գրել տամ, որ հինգ ու խաչ ստանաս։

Չգիտեմ ինչքան ժամանակ էր անցել (ես ֆուտբոլ էի խաղում), երբ տատիկս եկավ։ Ուրախ էր։ Շորի փոքրիկ կտորի մեջ փաթաթած մի ճռճռան բան տվեց ինձ ու ասաց. «Սուրբ գիր է, գրպանդ դիր ու ոչ մի պայմանով չբացես»։

— Ընկեր Վարդանյանին է՞լ ցույց չտամ,— զարմացած հարցրի ես։

— Վայ, ի՞նչ ես ասում,— բարկացավ տատիկս,— ոչ մեկին։ Հորդ ու մորդ էլ ցույց չտաս։ Թե մեկը էդ թուղթը տեսավ, վատ կլինի։

— Հիմա էլ չպարապե՞մ,— ուրախացած հարցրի ես։

— Գնա խաղա,— ժպտաց տատիկս,— քո գործը չէ, ժամում էլ երկու մոմ եմ վառել, հինգ ու խաչ,— իսկ երբ դուրս էի գալիս, հառաչեց,— իսկը քո օղորմածիկ պապն ես, Ասլան ջան։

Ծիծաղում եք, չէ՞։ Ի՞նչ ծիծաղելու բան է, որ... թե իմ տեղը կլինեիք։

Մյուս օրը, քննության ժամանակ, գրատախտակից արտագրեցի ընկեր Վարդանյանի գրած խնդիրը ու քիչ մնաց լաց լինեի։ Ոչ մի բան չէի հասկանում, այնինչ սովորական խնդիր էր... երկու անհայտով։ Ուզում էի մտածել, չէի կարողանում։ Իմ ընկերներն արդեն սկսել էին լուծել ու սենյակը լցրել էին գրիչների ճռճռոցով։ Իսկ ես... «Բա ինչու՞ «սուրբ գիրը» չի օգնում,— ասում էի ինքս ինձ, ձեռքս գրպանս էի տանում ու շոշափում շորի կտորի մեջ փաթաթած թուղթը,— ինչու՞ չի օգնում, հը՞, ախր հիմա զանգը կտա»։

Ինչու՞ չես գրում, Ասլան,— զարմացավ ընկեր Վարդանյանը,— ի՞նչ կա գրպանումդ, որ անհանգստացնում է քեզ։

Բոլորը շրջվեցին-ու սկսեցին ինձ նայել։ Ճռռոցը մի պահ դադարեց։

— Ես... ես... ոչինչ։ Հիմա կգրեմ,— կմկմացի։

— Դե, շտապիր։

Հեշտ է ասելը՝ շտապիր։ Ո՞նց շտապեմ, երբ «սուրբ գիրը» չի օգնում։ «Բայց ինչպե՞ս պետք է օգնի,— մտածեցի ես,— գուցե ձև՞ը չգիտեմ։ Գուցե խնդրի լուծումը մեջը գրա՞ծ է։ Բայց տատիկն ասաց, որ չպետք է բացեմ։ Է, լավ, եթե չբացեմ, ո՞նց կօգնի»։

Զղիմացա, կամացուկ, աննկատ քանդեցի կծիկը։ Այնպես էլ ամուր էր կապած։ Միջից հանեցի ճռռոցան թուղթը, նայեցի ու քիչ մնաց բարձրաձայն ծիծաղեի։ Մի տիկնիկ էր նկարած։ Այնպիսի մի տիկնիկ, որ ես նկարել եմ երեք տարեկան ժամանակ, ու մայրիկս դեռ պահում է. մի կլոր, մեծ գլուխ, մի երկար փոր և ցախավելի նման ոտքեր ու ձեռքեր։ Տիկնիկի շուրջը խզբզած էր՝ վերևից-ներքև կողքից-կողք, իսկ հենց տիկնիկի վրա գրված էր «սադանա»։ Ոչ թե «սատանա», այլ «սադանա»։

Քիչ մնաց ծիծաղեի։ Բայց ի՞նչ ծիծաղելու ժամանակ էր թուղթը գրպանս դրեցի ու նորից կարդացի խնդիրը։ Այ քեզ բան, ոնց որ դժվար չէ։ Սևագրության թղթի վրա շտապ-շտապ գրեցի, լուծեցի... պատասխանը չստացվեց։ Ստուգեցի ու նկատեցի, որ մի տեղ, սկզբում, սխալվել եմ։

Նորից գրեցի և... և պատասխանը ստացա։ Այնքան ուրախացա։

Արագ վերցրի թուղթը և, այն է, ուզում էի ստուգել, երբ զանգը հնչեց։

— Աշխատանքները հանձնեք,—ասաց ընկեր Վարդանյանը ու նկատելով, որ ես չեմ ավարտել, բարկացած ասաց,—տուր թերթիկդ, Ասլան։ Ոչինչ, ես կհասկանամ։ Գնա ու շարունակիր գրպանովդ զբաղվել։

Դե, ասեք, ի՞նչ անեի։ Սպասեցինք, որպեսզի իմանանք, թե ինչ գնահատական ենք ստացել։ Եվ բոլորի մոտ ընկեր Վարդանյանը ասաց, որ ես ստացել եմ «երեք»։

...երբ տուն մտա, բոլորն էլ սենյակում էին՝ հայրիկս էլ, մայրիկս էլ, տատիկս էլ...

— Ի՞նչ ստացար, Ասլան ջան,—ժպտալով տեղից վեր կացավ տատիկս,—հինգ ու խաչ։

— «3», առանց խաչի,— գոռացի ես ու էլ չկարողացա պահել, լաց եղա,— առանց խաչի,— ճչացի ես, գրպանիցս հանեցի ճռճռան թղթի կտորը, գցեցի հատակին ու սկսեցի տրորել,—առ վերցրու քո խաչը, ինձ պետք չէ։ Տար քո տերտերին տուր, որ իմանա, թե ոնց են գրում «սատանա» բառը, վերցրու...գնա քո տերտերի համար մոմ վառիր...

Բոլորը շփոթվեցին։ Տատիկս նույնիսկ փորձեց կարի մեքենայի վրա նստել։ Մայրիկս զարմանքից ծափ տվեց, իսկ հայրիկս ասաց.

— Լռիր, այդ ինչպե՞ս ես խոսում տատիկիդ հետ։

Հետո հայրիկս թեքվեց, գետնից վերցրեց թղթի կտորը, նայեց ու ամեն ինչ հասկացավ։

— Ախր ես տերտերին ասացի, որ ուժեղ գիր գրի, երևի թույլ է գրել,—մրմնջաց տատիկը ու սկսեց անիծել տերտերին։

Իսկ հայրիկն ասաց.

— Լավ, այդ մասին հետո կխոսենք։ Մեղավորը դու չես, այլ մենք ենք, որ չենք հետևել Ասլանին,— նա ցույց տվեց իրեն ու մայրիկին։ Հետո մոտեցավ ինձ, ձեռքը դրեց գլխիս այնպես, որ ես նորից սկսեցի կամացուկ լաց լինել ու ասաց.

— Լաց մի լինի, Ասո, և սրանից հետո քեզ հավատա, գրքերին հավատա։ Ինքդ տեսար, տերտերը նույնիսկ իր անունը գրել չգիտե։ Ինչո՞վ է օգնելու քեզ։ Իսկ հիմա գնա ու քնիր։ Եվ այդ մասին անպատճառ կպատմես ձեր ջոկատում։ Լսու՞մ ես...

Ես գնացի, պառկեցի ու լաց եղա։ Իսկ ճաշասենյակում, որտեղ հայրիկս, մայրիկս ու տատիկս էին, երկար ժամանակ լույսը վառվում էր։

Էլի ծիծաղում եք, չէ՞։ Դե, ոչինչ։ Հիմա ես էլ եմ ծիծաղում։ Մեր ջոկատում բոլորն էլ ծիծաղում էին, երբ պատմեցի։ Դե, լավ, լավ, չեք զարմացնի, ես հիմա ամեն ինչ էլ գիտեմ։ Գիտեմ, որ «սուրբ գիրն» էլ է սուտ, որ տերտերի ասածներն էլ են սուտ, որ աստված չկա... Իսկ գիտե՞ք հայրիկս ինչ ասաց։ Ասաց այնտեղ, որտեղ տերտերների ասելով աստված պիտի լիներ, մեր արբանյակներն են շրջում։ Իհարկե։

Տատի՞կս... չէ, տատիկս տերտերի մասին չի խոսում։ Էլի ինձ խնձոր ու կոնֆետ է տալիս իր գաղտնի գրպաններից, բայց մոմի ու տերտերի մասին ոչ մի խոսք։ Է, ի՞նչ եք կարծում, եթե հիմա մի բան ասի էլ՝ կհավատա՞մ։

Ա՜խ, տատի՜կ, տատի՜կ։





# ԽՆՁՈՐՆԵՐԸ

*(Պատմվածք)*

ԿԱՄԱՐԻ ՏՈՆՈՅԱՆ

Նկ. Յ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

*Ուրիշները սեղանի վրա ծաղկամանով ծաղիկներ են դնում կամ ջրամանով ջուր։ Մայրը ամեն առավոտ սենյակը կարգի բերելուց հետո սեղանին դնում էր մի սկահակ խնձոր։ Նուրբ դեղնավուն կեղևով կարմրաթշիկ խնձորներ։ Կեսօրին մոտ արևի շողը սահելով անցնում էր սպիտակ սփռոցով ծածկված սեղանին, մուգ-կապտավուն բյուրեղապակյա սկահակը դառնում էր բաց-կապտավուն, խնձորների դեղինը պայծառանում էր, կարմիրը դառնում վառ-ալ։*

*Տղան դպրոցից տուն էր գալիս կեսօրին։ Նախաճաշից հետո մայրը միշտ խնձոր էր տալիս։ Բայց ոչ թե այն խնձորներից, որոնք դրված էին սեղանի վրա, սկահակի մեջ։ Սկահակի միջի խնձորները միշտ խոշոր էին, դեղինը՝ պայծառ, կարմիրը՝ վառ-ալ և ավելի համեղ։*

*Տղան ցանկանում էր ուտել հենց այդ խնձորներից։ Ամեն անգամ, երբ նախաճաշից հետո մայրը դուրս էր գալիս սենյակից, նա վերցնում էր սկահակի միջի խնձորներից մեկը, ամենախոշորը, դնում գրպանը։ Հոգ չէր, որ հետո մայրը նկատում էր, քաշում էր ականջը, խփում էր ձեռքին, որով նա խնձոր էր վերցրել։ «Մյուս անգամ այդպիսի բան չանես» —ասում էր մայրը։ Եվ միշտ էլ սկահակի միջի խնձորները խոշոր էին թվում, դեղինը՝ պայծառ, կարմիրը՝ վառ-ալ և ավելի համեղ։*

*Բայց մի անգամ, երբ տղան վերցրեց սկահակի միջի խնձորներից մեկը, ամենամեծը, և պատրաստվում էր գրպանը դնել, հանկարծ նկատեց՝ ինչ-որ բան պակասեց։ Խնձորներով լի սկահակից ինչ-որ բան պակասեց։ Նա գրպանից հանեց խնձորը, դրեց տեղը, ինչպես դրված էր, ետ-ետ գնաց։ Գեղեցիկ էր. սեղանի երեսը պայծառ-պայծառ սպիտակ էր, սկահակն այդ սպիտակի վրա շողում էր բաց-կապտավուն գույնով, խնձորների դեղինը պայծառ էր, իսկ կարմիրը՝ վառ-ալ... Գեղեցիկ էր։ Մոտեցավ, վերցրեց խնձորը, ամենամեծը։ Մի բան պակասեց... Ոչ թե խնձորը... Այն ամենից, ինչ գեղեցիկ էր, թվաց մի բան պակասեց։ Ինչ-որ մի բան... Ոչ թե խնձորը... Նա խնձորը դրեց տեղը այնպես, ինչպես դրված էր։*

*— Ի՞նչ ես անում...*

*Մայրն էր։ Տղան սթափվեց, մատը մեկնեց սեղանին.*

*— Գեղեցիկ է...*

*Մայրը ժպտաց ու ոչինչ չասաց։*

ՎԱՀԱՆ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Ըստ Բեխերի)

# ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ՈՎ

Փողոցում ընկած
Մի սեղան տեսան,
Կենդանիները
Շուտ վրա հասան:

Ո՞վ մեր հարգարժան
Ու սիրելի եզ,
Դու, որ անսահման
Խոնարհ ես ու հեզ,
Անչափ բարի ես
Ու համբերատար,
Վերցրու սեղանն այս
Ու շուտ դպրոց տար:

Մի գրա՜նց տեսեք.
Ա՜յ քեզ նոր օյին,
Դժգոհեց եզը
Ցասումով խորթին. —
Սեղան տանելու
Ցանկություն չունեմ
Ես բոլորովին:
Եվ եզը ուշիմ
Որոշեց դիմել
Հարևան էշին:

Էշը շատ խորհեց,
Գլուխն օրորեց.
— Չարչարվե՞մ,
Ինչո՞ւ:
Ի՞նչ օգուտ ունեմ
Ինքս այդ գործում.
Հո չե՞մ սովորում
Ես այդ դպրոցում:
Եվ իշուկ քեռին
Դիմեց ոչխարին:

Իսկ ոչխարը ծույլ,
Գործի անսովոր.
Ես տկար եմ, թույլ...
Իսկ էշն ո՞վ է որ,
Ականջները խոր,
Միտքը շատ սաղրիկ,
Նա համարձակվի
Ոչխարիս ծաղրի՞:

Եվ խիստ բարկացած
Նա այծին ասաց.
Այս սեղանը առ
Ու շուտ դպրոց տար:

Այծն ուրախացավ
Ու ոգևորվեց.
Այո՛, կտանեմ: —
Ապա չարացավ
Ու շատ փոշմանեց:

Ասացեք խնդրեմ,
Այդ ո՞ր օրվանից
Տգետ կամ հիմար
Դարձա ոչխարից:
Մազերը նրա
Երկար են ու խիտ,
Ինքը՝ բթամիտ:

Հետո վազ տվեց
Նա Բարբոսի մոտ,
Սիրով բարևեց,
Ընկավ ձեռն ու ոտ:

Բարով, ա՜յ բարով,
Սիրելի Բարբոս,
Մի խնդիրք ունեմ,
Իմ հույս, իմ փարոս,
Ընկեր աննման,
Ազնիվ ու բարի,
Դու այս սեղանը
Դպրոց չե՞ս տանի:

Բարբոսը դեմ չէր,
Կգնար դպրոց,
Սիրում էր շրջել
Փողոցից-փողոց:
Այն է, ուզում էր



# ՍԵՂԱՆԸ ԴՊՐՈՑ ՏԱՐԱՎ

Ճանապարհ ընկնել,
Երբ, բերը՛, մեկ էլ
Տեսավ փողոցից
Հարևան կատուն
Մտավ իրենց տուն:
Եվ մոտենում է
Բարևում նրան.
— Դու մուկ որսացող
Անպետք սրիկա,
Լավ ձեռքս ընկար.
Վերցրու սեղանն այս
Ու շուտ դպրոց տար:

Իսկ կատուն իսկույն
Դիմեց մկներին՝
Ասաց լինելին
Նրանք իր գերին:
— Է՜յ, անիծված ցեղ,
Թողած տուն ու տեղ,
Հավաքվեք. եկեք
Այստեղ, աչքիս դեմ,
Չեք ուզում, եթե
Բոլորիդ խեղդեմ:
Անաղմուկ, կամաց
Դուրս եկեք փողոց,
Առեք սեղանն այս
Ու տարեք դպրոց:
Իսկ եթե հանկարծ
Մեկդ ասի «ո՛չ»,
Կբնաջնջեմ
Ձեր ցեղը ամբողջ...

Դե՛, մկներն ի՞նչ են.
Ուժ չունեն կարգին.
Նրանք էլ եկան
Դիմեցին սարդին:

Ինչ որ մութ փոսում
Սարդը խորամանկ
Ոստայն էր հյուսում
Շատ ժիր ու արագ:

— Բարով եք եկել,
Հարգելի մկներ,
Անշուշտ կուզեք
Ինքս ձեզ օգնել.

Իմացեք, սակայն,
Որ պահանջում եք
Ուժից վեր բան:
Բայց հանուն սիրո
Եվ ընկերության,
Կցուցաբերեմ
Հունարս վերջին
Եվ այդ գործն իսկույն
Կհանձնեմ ճանճին:
Ամեն տեղ ունի
Ազատ ել ու մուտ
Ամենակարող
Ճանճը մեր հմուտ.
Լոկ նա կարող է
Վիճակից անել
Մկներից հանել:

Ճանճն էլ իր հերթին
Թռավ ու գնաց,
Գտավ մրջյունին
Ու այսպես ասաց.

— Քեզ բարի ողջույն,
Սիրելի մրջյուն,
Քեզ մոտ եմ եկել,
Ահա թե ինչու...

Շատախոս ճանճը
Անվերջ ազազում
Ու խիստ ձանձրալի
Մի ճառ էր ասում.
Բայց աշխատասեր
Ժիր մրջյունը մեր
Երկար լսելու
Ժամանակ չուներ.
Շուտ սեղանն առավ
Ու դպրոց տարավ:



# Հեքիաթը շարունակվում...







ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

Երբ իմ Գուրգենիկը երեք տարեկան էր, շատ էր սիրում հետևյալ հեքիաթը, որի գլխավոր հերոսներից մեկը ինքն էր: Երևի դրա համար էլ այդ դարձավ նրա ամենասիրելի հեքիաթը, և նա օրվա ընթացքում մի քանի անգամ կրկնել էր տալիս և լսում մեծ ոգևորությամբ:

Ահա այդ հեքիաթը.

## ԱՐՋԻ ՔՈԹՈԹ ՀՈՏՈՏԻ ԵՎ ԳՈՒՐԳԵՆԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Քոթոթ Հոտոտը ունիվերմագ մտավ և տեսավ մի շարք ավտոմեքենաներ — «Մոսկվիչ», «Վոլգա», «ԶԻԼ»: Հոտոտին առանձնապես դուր եկավ կապույտ, երկնագույն «Մոսկվիչ»-ը: Նա մոտեցավ վաճառող սիրուն մորաքրոջը.

— Մորաքույր, ա՛յ մորաքույր...

— Ի՞նչ կա, Քոթոթ Հոտոտ:

— Մորաքույր, տուր ինձ ահա այս «Մոսկվիչ»-ը:

Մորաքույրը ժպտաց և ասաց.

— Տուր քառասուն կոպեկ և առ «Մոսկվիչ»-ը:

Իսկ Հոտոտի մոտ ոչ մի կոպեկ:

— Ես ոչինչ չունեմ,— տրտնջաց Քոթոթը,— քառասուն կոպեկը ի՞նչ է, տուր, մորաքույր, ահա այս «Մոսկվիչ»-ը...

— Չունես՝ չես ստանա,— ասաց մորաքույրը:

Տխուր, տրտում Քոթոթ Հոտոտը դուրս եկավ ունիվերմագից, և տեսավ դիմից գալիս է Գուրգենիկը:

— Գուրգենիկ, ա՛յ Գուրգենիկ, տուր ինձ քառասուն կոպեկ:

— Ինչի՞դ է պետք քառասուն կոպեկը,— հարցրեց Գուրգենիկը:

— Եթե իմանաս, Գուրգենիկ, քառասուն կոպեկը կտանք սիրուն մորաքրոջը, նա մեզ «Մոսկվիչ» կտա, կնստենք քեզ հետ, ու...

Գուրգենիկի աչքերը փայլեցին:

— Ես չունեմ ոչ մի քառասուն կոպեկ, բայց հայրիկը կունենա, գնանք հայրիկից խնդրենք...

Գուրգենիկը տոտիկ-տոտիկ, իսկ Քոթոթը փաթփաթ, գնացին տուն, բարձրացան սանդուղքներով, բայց ոչ Գուրգենիկի ձեռքը, ոչ Քոթոթի թաթը զանգին չհասավ, որ զանգը տային: Այստեղ Քոթոթ Հոտոտը բարձրացրեց Գուրգենիկին իր թաթերով, Գուրգենիկը ցուցամատով սեղմեց զանգի կոճակը:



— Տը՛զզ... —զնգաց դռան զանգը:

— Ո՞վ է,—լսվեց մայրիկի ձայնը ներսից:

— Ես եմ, Քոթոթ Հոտոտի հետ,—պատասխանեց Գուրգենիկը:

Նրանք ներս մտան: Հայրիկը նստած գրասեղանի մոտ գրում էր:

— Հայրիկ, ա՛յ հայրիկ,— խնդրեց Գուրգենիկը,— տուր քառասուն կոպեկ:

— Ինչիդ է պետք քառասո՛ւն կոպեկը,—հարցրեց հայրիկը:

— Եթե իմանաս, հայրիկ, քառասուն կոպեկը կըտանք սիրուն մորաքրոջը, նա մեզ «Մոսկվիչ» կտա, կնստենք Քոթոթի հետ, ու...

Հայրիկը ժպտաց, տվեց քառասուն կոպեկ, Գուրգենիկը տոտիկ-տոտիկ, իսկ Հոտոտը փաթ-փաթ ունիվերմագ մտան: Այստեղ նրանք սիրուն մորաքրոջը վճարեցին քառասուն կոպեկ, վերցրին «Մոսկվիչ»-ը, ղեկի մոտ՝ Քոթոթը, նստեցին ու...

— Տու՛-տու՛, տու՛-տու՛...

Թռչում է ավտոն մեծ ճանապարհով, իսկ Քոթոթի ու Գուրգենիկի քեֆին քեֆ չի հասնի: Մեկ էլ հանկարծ ճանապարհի վրա երևում է բրդոտ Շունը:

— Հա՛ֆ-հա՛ֆ,—խնդրում է Բրդոտը,—Գուրգենիկ սիրելի, ինձ էլ վերցրեք ձեզ հետ...

Քոթոթը կանգնեցնում է մեքենան.

— Գուրգենիկ, ա՛յ Գուրգենիկ, խնդրում է Բրդոտը:

— Խնդրե՛մ, խնդրե՛մ, սիրուն շնիկ, նստիր գընանք,—ասում է Գուրգենիկը:

Շունը հոպ, տեղավորվում է ավտոյի մեջ, ու...

— Տու—տու՛, տու ու՛...

Թռչում է ավտոն մեծ ճանապարհով, մեկ էլ հանկարծ ճանապարհի վրա երևում է Փիղը.

— Գուրգենիկ, ա՛յ Գուրգենիկ...

— Խնդրեմ, խնդրեմ, քեռի Փիղ, մի կերպ մտիր, նստիր...

Փիղը մի կերպ մտնում է ավտո, ու...

— Տու—տու՛, տու ու՛ւ...

Գուրգենիկի ու Քոթոթ Հոտոտի քեֆին քեֆ չի հասնի:

Այսպես նրանք ճանապարհին վերցնում են Կատվին, Աքլորին, մի լավ ման են գալիս ու գալիս են բոլորը միասին Գուրգենիկենց տուն: Փիղը բարձրացրեց իր կնճիթը, սեղմեց զանգի կոճակը.

— Տը՛զզ... —զնգաց զանգը:

— Ո՞վ է,—լսվեց մայրիկի ձայնը ներսից:

— Ես եմ, Քոթոթ Հոտոտի, Բրդոտի, Փիղ քեռու, Կատվի, չալ Աքլորի հետ,—պատասխանում է Գուրգենիկը:

Մայրիկը դուռը բացեց, նրանք ներս մտան:

Հետո մայրիկը սեղան պատրաստեց, շանը կերակրեց ոսկորներով, կատվին՝ կաթով, Աքլորին՝ ցորենհատիկով, Քոթոթին՝ մեղրով, Փիղ քեռուն՝ մի քանի վեդրո ալրաճաշով, շաքարով, թխվածքներով, իսկ Գուրգենիկին՝ հաց ու պանրով:

Կերան, խմեցին, պառկեցին, քնեցին:



Ահա այդ՝ հեքիաթը:

Ես ասացի, որ Գուրգենիկը երեք տարի առաջ էր սիրում այս հեքիաթը. այսօր ես հիշեցի և նորից պատմեցի նրան: Նա լսեց շարունակ միջամտելով և խանգարելով: Նա ինձ ասաց, որ Քոթոթը ունիվերմագ չի կարող մտնել, որ կենդանիները առհասարակ հայերեն չգիտեն, որ չորս հոգուց ավելի ավտոյի մեջ նստել չի կարելի, որ Փղի համար ոչ մի հարմար մահճակալ չկա, որ պառկի, քնի:

— Ավելի լավ է, հայրիկ, դու ինձ համար նոր հեքիաթ պատմի, նորը, լավը,— խնդրեց Գուրգենիկը:

Հիմա ես մտածում եմ այդ նոր հեքիաթի մասին: Եթե գտնեմ, ձեզ էլ կպատմեմ...

## „ՎԱՂՈՒՑ ԳԻՏԵՄ"

ԵՐՋ. ԱԽԱՔԵԼՅԱՆ

Միթե նրան դուք չգիտեք.
Մեր դպրոցի շեկ Մինասին.
Ինչ հարցնեք, կասի. «Գիտեմ,
Վաղուց գիտեմ ես այդ մասին»:

Եթե նրան դուք հարցնեք
Լուսնի մասին, կասի ծեռաց.
«Դա ինչ է որ, լուսնի մասին
Ես գիտեի— դեռ չծնված:

Գիտեմ լուսնի վրա անգամ
Քանի գետ կա, քանի ծովակ,
Քանի աղբյուր կա գլգլան,
Ձկնորսական քանի նավակ:

Գիտեմ նույնիսկ Մարսի վրա
Ինչ լեզվով են մարդիկ խոսում.
Այնտեղ երբեք ձմեռ չկա,
Եվ արևն է այնպես կիզում»:

Իսկ թե նրան հարցնեք դասից,
Նա կկանգնի լուռ, տխրադեմ.
Դրա համար մենք Մինասին
Անվանում ենք «Վաղուց գիտեմ».





## ՉԱՐԱՃՃԻՆ

Գ. ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

Առավոտից ու գիշերաց.
Ամբողջ օրը կռիվ ու լաց.
Սրան հրում, նրան խփում.
Տուն է գալիս արցունք թափում.
Դե, ինչո՞վ եմ ես մեղավոր.
Համոն ինքն է շորերը նոր
Պատառոտել ու ցեխոտել,
Գնացել է ու գանգատվել:
Կամ ինչ արի ես Մարգարին.
Ինքը գնաց կպավ քարին.
Արյունոտեց ձեռք ու երես.
Դե, ինչո՞վ եմ մեղավոր ես...

Նկ. Բ. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ



Լուսանկար՝ ԶԱՆԻԿ ՍԱՐԳՍՅԱՆԻ

# Երկվորյակ շախմատիստները

Ես ուզում եմ ձեզ պատմել շախմատիստ եղբայրների մասին, որոնք շախմատ խաղալ սկսել են դեռևս մանկապարտեզում։

Եղբայրները Կարենն և Լևոն Գրիգորյաններն են, որոնք սրանից մոտ վեց տարի առաջ կանոնավոր կերպով սկսեցին շախմատով պարապել վարպետ Լորիս Քալաշյանի մոտ։

Կարենն ու Լևոնը լուռ հետևում էին ուսուցչի խորհուրդներին, աշխատում ոչինչ չփախցնել ուշադրությունից։ Իսկ տանը շախմատի խաղատախտակի վրա ֆիգուրաների նույն դրությունները կրկնվում էին մի քանի անգամ, վերլուծության էին ենթարկվում սկզբնախաղերի տարբերակները, ամեն մի քայլը…

Այդ օրերից անցան տարիներ։

1957 թվականին Կարեն և Լևոն Գրիգորյաններն առաջին կարգի շախմատիստներ էին։ Յուրաքանչյուր շախմատային դրություն նրանք կարողանում էին հասկանալ ու վերլուծել, հաճախ էլ իրենք էին կազմում էտյուդ-խնդիրներ՝ առաջարկում ուրիշներին լուծելու։

Կիսլավոդսկում տեղի ունեցած բլից-տուրնիրում 10-ամյա Կարեն Գրիգորյանը գրավեց 3-րդ տեղը և արժանացավ մրցանակի։

Քանի-քանի անգամ երկվորյակները խաղի միաժամանակյա սեանսում պարտության են մատնել այնպիսի տաղանդավոր գրոսմայստերների, ինչպիսիք են՝ Տիգրան Պետրոսյանը և Մարկ Տայմանովը, քանի-քանի անգամ նրանք մասնակցել են պատանի շախմատիստների համամիութենական մրցումներին։

— Կարե՛ն, առաջ ես անցնում Լևոնից,— կատակով ասում էին Չեխովի անվան դպրոցի աշակերտները, որոնց հետ սովորում են երկվորյակները,— իսկ դո՛ւ, Լևոն, լարիր ուժերդ նրան հասնելու համար։

Անցյալ տարվա Երևան քաղաքի առաջնության մրցումներում Կարենը 4-5-րդ տեղերը բաժանեց վարպետության թեկնածու Վանիկ Զաքարյանի հետ։

Իսկ այս տարի հունվարին, երբ սկսվել էր Երևան քաղաքի շախմատային 30-րդ հոբելյանական չեմպիոնատը, հանդիսատես-շախմատասերներն առանձին ուշադրությամբ էին հետևում երկվորյակների խաղին։

Անչափ հետաքրքրություն առաջացրեց այս չեմպիոնատը հանդիսատեսների մեջ, չէ՞ որ ռես-



պուբլիկական 20-րդ չեմպիոնատին մասնակցելու իրավունք է վերապահվելու 6 շախմատիստի:

Բոլորն էլ հաստատ համոզված էին, որ պատանի շախմատիստներից միայն Կարեն Գրիգորյանը կարող է հասնել հաջողության. չէ՞ որ նա ավելի շատ փորձ է ձեռք բերել ինչպես համամիութենական - պատանեկան, այնպես էլ մեր մայրաքաղաքի և ռեսպուբլիկայի մրցումներից: Եվ ինչպես ժողովուրդն է ասում «փորձը գործ է ծընում»:

Ինչպիսի՜ անհամբերությամբ էին սպասում նրանց դասընկերները, ընկերասիրական ինչպիսի՜ մեծ հոգատարություն էին ցուցաբերում նրանց նկատմամբ, երբ երկվորյակները խաղում էին համեմատաբար ավելի ուժեղ շախմատիստների հետ...

Երբ չեմպիոնատը վերջացավ և պարզվեց, որ Կարեն Գրիգորյանը գրավել է 2-րդ մրցանակային տեղը, միևնույն ժամանակ լրացնելով Ռեսպուբլիկական շախմատային ֆեդերացիայի կողմից վարպետության թեկնածուի մեկ բալի համար սահմանված նորման, շախմատասեր-հանդիսատեսները բուռն ծափահարություններով ողջունեցին 12-ամյա պիոներ-շախմատիստին:

Սա արդեն պատանի Կարեն Գրիգորյանի վարպետության թեկնածուի համար ստացած 2-րդ բալն է: Առաջինը նա լրացրեց 1959 թվականին՝ Մոսկվայի Կենտրոնական շախմատային ակումբում անցկացված առաջին կարգայինների որակավորման տուրնիրին, երբ նա գրավեց առաջին տեղը:

Այս տարվա հունվարին Մոսկվայում կայացած «մարզային-որակավորման» տուրնիրում, որտեղ խաղում էին ինչպես առաջին կարգայիններ, այնպես և վարպետության թեկնածուներ, Կարեն Գրիգորյանը կրկին անգամ գրավեց առաջին տեղը, իսկ նրա եղբայր Լևոնը բավարարվեց 3-րդ տեղով:

Այժմ շնորհալի շախմատիստները Սովետական Միության պատանի շախմատիստների հավաքական թիմի անդամներ են համարվում:

Ապրիլ ամսին Երևանում կայացած Ռեսպուբլիկական չեմպիոնատի ժամանակ շախմատասեր-հանդիսատեսները հարցնում էին միմյանց.

— Ինչու՞ Կարենը չի մասնակցում այս չեմպիոնատին...

Իսկ Կարեն և Լևոն Գրիգորյան եղբայրները, այդ օրերին մասնակցում էին Մոսկվայում կայացած պատանի շախմատիստների համամիութենական կիսաեզրափակիչ մրցումներին:

Այդ մրցումներում հատկապես մեծ հաջողությունների հասավ Կարեն Գրիգորյանը: Նա իրավունք ստացավ մասնակցելու պատանի շախմատիստների համամիութենական եզրափակիչ մրցումներին, որտեղ բաժանելով 2-3-4-րդ տեղերը ստացավ Սովետական Միության սպորտի վարպետության թեկնածուի պատվավոր կոչում:

Կարեն Գրիգորյանը մեր երկրի ամենափոքր վարպետության թեկնածուն է:

ԱԼԲԵՐՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ



## Դատարկ տուն

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Վա՜յ, այս տղան ո՞վ է, ո՞վ...
Տուն է դառնում երգելով.
Մեկ խոսում է, կչկչում,
Մեկ էլ հանկարծ զիլ ճչում.
Պայուսակը թափ տալիս,
Գցում գետին, ծափ տալիս...

Դա Պետիկն է մեր գիտուն
Ուրախ-ուրախ վազում տուն:
Բայց թե այսօր տո՞ւն է որ...
Ընկերները իր բոլոր
Դաս են անում դպրոցում,
Սա պարում է փողոցում,
Հրում սրան կամ նրան,
Ծիծաղում է բացբերան.
— Հա՛-հա՛... դասից ուշացա



Ու էլ դպրոց չմտա...
Բարկանում է մի ծերուկ.
— Գործ արա, գործ. այ խենթուկ...
— Ի՞նչ գործ, ի՞նչ դաս... տրայ-տին-տի՞ն.
Երգ է ասում մեր Պետին:
Ինչքան արեց տրայ-տին-տին,
Ես չգիտեմ. բայց Պետին
Մի դասարան իջավ վար.
Կորավ-գնաց երգ ու պար:
Եվ ամռանը այնքան շոգ
Ճամբար գնաց ամեն ոք,
Իսկ Պետիկը մեր խելառ
Քրտինք թափեց ողջ ամառ,
Գունդը գցեց, նիհարեց
Ու ո՛չ երգեց, ո՛չ պարեց:

# ԹԵ ԻՆՉ ԵՂԱՎ, ԵՐԲ ՄԱՅՐԻԿՆ ՈՒԶԵՑ ԼՎԱՑՔ ԱՆԵԼ...

*ԱԼ. ԱՎԵՏԻՍՅԱՆ*

*Նկ. Հ. ՄԻՆԱՍՅԱՆԻ*

Մայրիկը պատրաստվում էր լվացք անել, երբ հիշեց, որ տաշտակի տակը պոկվել է ու ջուր է թողնում:

— Վա՜յ, ի՞նչ պիտի անեմ, մոռացա սարքել տալ,—շվարած, ձեռքերն իրար զարկելով, ասաց նա:

— Այդ ի՞նչ է եղել, մայրիկ,—հարցրեց Հայկը, որ դպրոցից նոր էր տուն եկել:

Նա չորրորդ դասարանում էր սովորում:

— Ի՞նչ պետք է լինի, լվացքս մնաց: Տաշտակի տակը պոկվել է:

— Պոկվե՞լ է,—ասաց Հայկն ու սկսեց զննել ցինկե տաշտակը:

Պարզվեց, որ առանձնապես ոչինչ չկար: Անագը, որով տաշտակի տակը միանում էր վերևի շրջանաձև մասին, մի քիչ տեղ մաշվել է, ու բացվածք է առաջացել: Այդ բացվածքից էլ ջուրը հոսում է:

— Հիմա ամեն ինչ լավ կլինի,—հանգիստ ասաց Հայկն ու դուրս գնաց:

Ահա նա ծեծում է Սուրիկենց տան դուռը: Ներս մտավ: Սուրիկի հայրիկը տանն էր: Հայկը նրան շատ էր տեսել զոդիչը ձեռքին աշխատելիս, հետեվել էր, թե նա ինչպես ռադիոընդունիչի կամ հեռուստացույցի երկու պոկված մասերը այդ զոդիչով ու անագի փշրանքով իրար է միացնում: Նա տեսել էր նաև, որ Սուրիկի հայրը փայտե բարակ մարխով սրվակից մի կաթիլ հեղուկ է կաթեցնում միացման տեղում: Այս բոլորն իմանալուց հետո դժվար չէր ինքնուրույն անել այդ նույնը: Հայկը Սուրիկի հորը պատմեց ամեն ինչ, ապա խնդրեց, որ զոդիչը ու մի կտոր էլ անագ տա իրեն:

Հիմա նա արդեն տանն էր: Շտապ զոդիչը միացրեց հոսանքին ու սկսեց սեղանին հավաքել մյուս պարագաները: Մնում է հեղուկով լի սրվակը: Քիչ հետո դա էլ եղավ: Հայկը ձեռքն առավ զոդիչը: Նա հուզմունքից դողացող ձեռքով մի կտոր անագ դրեց բացվածքի մեջ, ապա զգուշությամբ փայտիկով մի կաթիլ հեղուկ կաթեցրեց վրան ու զոդիչի ծայրը, որ արդեն շիկանում էր, հպեց անագին: Հեղուկը թշշաց ու արագ գոլորշացավ: Անագը դանդաղությամբ սկսեց հալվել: Հայկը թեթևակի բարձրացրեց զոդիչը, բայց այ քեզ բան, անագը կպել է զոդիչի ծայրին ու չի լցվում բացվածքի մեջ: Այսպիսի դեպքում նշանակում է հեղուկն է քիչ, անցավ Հայկի մտքով ու մի կաթիլ էլ կաթեցրեց անագի վրա: Նորից գոլորշիներ բարձրացան, անագը դարձավ փռված կաթի նման: Էլի անագ ավելացրեց, սակայն ապարդյուն: Հայկը սկսում էր շոգել: Դեմքը քրտնել էր, նա սպառեց ողջ անագը, համարյա լրիվ դատարկեց սրվակը, բայց դարձյալ բացվածքը մնում էր: Ո՞վ գիտե, թե նա որքան այսպես չարչարվեց: Ուշքի եկավ դռան զանգից: Հայրիկն էր: Ներս գալով նա Հայկին գըտավ հուզմունքից կաս-կարմիր կտրած:



— Այդ ի՞նչ է, պոկվե՞լ է,—հարցրեց նա:

— Այո...

— Տեսնեմ ի՞նչ ես անում:

Հայրիկը մոտեցավ սեղանին:



— Ա՜յ, ա՜յ, ա՜յ ողջ անագը հալել ես, ու մի բան էլ չի ստացվել:

— Այս մետաղը անագ չի բռնում,— արդարացավ Հայկը:

— Ինչպես թե չի բռնում, ապա այս ինչպե՞ս են կպցրել:

Հայկն ուսերը վեր ու վար արեց:

— Աղաթթո՞ւ է, թե ծծմբական թթու,— թեթևակի թափահարելով սրվակը հարցրեց հայրիկը:

— Ի՞նչ թթու,— ինչ-որ բան կռահելով տարակուսեց Հայկը:

— Բա ինչ, զոդելիս աղաթթու կամ ծծմբական թթու են գործածում կամ բենկնախեժ:

Ահա թե բանն ինչումն էր: Նա պարզապես սրվակի մեջ ծորակից սառը ջուր էր լցրել:

---

# Արջը հրացանով

ԱՂԱՍԻ ԹԱՂԻՐԱՋՅԱՆ

Նկ. Կ. ՍԱՐԳՍՅԱՆԻ

Ջահել տղա էի, տասնյոթ-տասնութ տարեկան: Մի ընկեր ունեի Գևորգ անունով: Մի օր եկավ թե.

— Վարդան, ախպերս քաղաք է գնացել, արի ես նրա հրացանը վերցնեմ, դու էլ՝ հորդ հրացանը, գնանք որսի: Էս երկու ամիս է, որսի միս համ չեմ առել:

Գնացինք, դես ման եկանք, դեն ման եկանք, մի բան էլ չգտանք, ուզում էինք ետ գալ, մեկ էլ թփի տակից մի աղվես իր ձագի հետ դուրս թռավ:

— Գևո՛րգ, ա՜յ Գևորգ, տո՛ւր:

Եվ երկուսիս հրացանն էլ թնդաց:

— Միսն ինձ, մորթին քեզ,— ասաց Գևորգը:

— Այ տղա, աղվեսի միսը չեն ուտում:

Ինչ արի-չարի չեղավ: Հրացաններս կախեցինք մոտիկ ծառից, ձեռաց աղվեսին տիկ հանեցինք, փետ ու մետ հավաքեցինք, մի լավ կրակ արինք: Սա սկսեց միսը խորովել, ուտել: Ինձ չկարողացա պահել: Մի կտոր էլ ես դրեցի կրակին: Էնպես ախորժակով ենք ուտում, էլ պատմելու բան չի:

Գևորգս, որ մի քիչ կշտացավ, ձենը գցեց գլուխը: Երգ է ասում:

Մեկ էլ էն ձենի վրա, ականջիս մի շխշխկոց հասավ: Ետ նայեմ, ի՞նչ տեսնեմ: Մոտ հիսուն մետր մեզանից հեռու՝ մի՛ հսկա արջ:

— Գևորգ, արջը,— գոռացի ես:

Գևորգս շանթահարի պես վեր թռավ: Վազեցինք դեպի հրացանները, հրացան չկար: Էս ծառին ենք նայում, էն ծառին, հրացան չկա: Մեկ էլ նայեմ ինչ տեսնեմ, մեր հրացանները արջի ձեռքին: Մեկը մարդու պես թևն է գցել, մյուսով դեպի մեզ նշան բռնել: Ասի.

— Գևորգ, սա հրաշք է, արի փախչենք:

— Ինչ ես ասում, լավ է ես էլ ընկնեմ արջի ձեռքը, քան առանց հրացանի տուն գնամ: Արի դանակներով հարձակվենք, գազան է է՛լի, խաղ է անում, գուցե գցի, փախչի,— ասաց Գևորգը:

Էդ խոսքի հետ արջը հրացանը կրակեց: Ծառի տերևները թափվեցին գլխներիս: Իսկ ընկերս էլի ձեռք չի քաշում, թե՝ թաթը կպավ լծակին, կրակ-

վեց: Հավատացի: Բայց արջը կրակածը դուրս հանեց, տեղը նոր փամփուշտ դրեց:

— Գևորգ, փախի, հիմա որտեղ որ է մեզ կըսպանի, եկանք որս անելու, որս պիտի դառնանք,— ասացի ես:

Գևորգս էլ վախեցավ, մեջքներս դեպի արջին արինք, դե փախի, ոնց կփախչես: Բայց ընկերս հանկարծ կանգ առավ.

— Ո՞նց գյուղամեջ գնանք առանց հրացանի, տղերքը ինչ կասեն:

— Արի մնանք էստեղ մինչև մութը վրա տա:

— Չէ, չէ,— առարկեց Գևորգը,— իզուր փախանք, ես ետ եմ գնում:

— Ու՞ր,— թևից բռնելով ասացի ես,— ուզում ես, որ արջը քեզ...

— Հերիք է, վախկոտ, թող ինձ, ես գնում եմ:

— Իսկ ե՞ս:

— Դու գյուղ գնա:

— Այդ ինչպե՞ս, չէ՞ որ մենք ընկերներ ենք:

— Եթե իսկապես ընկեր ես, ուրեմն արի ենձ հետ:

— Ի՞նչ կարող եմ անել ես...նույնիսկ դանակ չունեմ:

— Դանակ պետք չի, դու գիտես, որ արջի ականջներից բռնեցիր՝ խեղճանում է: Ես արջի ուշադրությունը կգրավեմ ինձ վրա, իսկ դու զգուշությամբ կմոտենաս և կկախվես ականջներից: Նա թաթերը կմեկնի քեզ, իսկ ես այդ ժամանակ մահացու հարված կհասցնեմ ուղիղ սրտին:

Շատ չանցած՝ մենք նորից հանդիպեցինք ամեհի գազանին: Ինձ թվաց, թե գազանն է մեզ հետապնդում և ոչ՝ մենք նրան:

Վարդան,— շշուկով ասաց ընկերս,— դու հետևի կողմից հարձակվիր:— Եվ դանակը ձեռքին իր թաքստոցից դուրս թռավ ուղիղ արջի դիմաց: Արջը ցածր ձայնով մռնչաց և սուր եղունգները ցցելով դանդաղորեն շարժվեց: Գևորգը աչքի տակով ինձ էր նայում, իսկ ես քարացել էի տեղումս, ինձ թվում էր, թե շարժվել այլևս անհնարին է: Վախից ամբողջ մարմնով դողում էի: Գևորգն էլ իր տեղում էր քարացել, սպասում էր ինձ, իսկ արջը շարունակում էր դանդաղորեն առաջանալ դեպի Գևորգը, առանց ուշադրություն դարձնելու Գևորգի ձեռքին բռնած մերկ դաշույնին:

Ընդամենը մեկ մետր էր մնացել արջի և Գևորգի միջև: Ահա, ուր որ է արջը նրան կուլ կտա: Իսկ եմ տեղիցս ոչ մի կերպ չեմ կարողանում պոկվել: Փակեցի աչքերս, որպեսզի չտեսնեմ այդ սարսափելի րոպեն:

Նույն պահին ականջիս հասավ Գևորգի ձայնը:

— Դավաճան:

Այդ բառը կարծես ծակեց ուղեղս, բաց արի աչքերս, արջը և Գևորգը գրկախառնվել էին: Պոկվելով տեղիցս, հարձակվեցի արջի վրա, բռնեցի նրա ականջներից և ծունկս հենելով մեջքին, սկըսեցի քաշել, ինչքան ուժ ունեի:

Գևորգը չէր կարողանում հարվածել, որովհետև արջը բռնել էր ուղիղ նրա դաստակից: Հանկարծ արջը իրեն թափ տվեց, ես ընկա մի կողմի վրա: Վեր կենալով տեղիցս, պատրաստվում էի նորից հարձակվելու, սակայն մնացի ապշած: Մորթու տակից դուրս էր ցցվել Ջորթանենց Թովմասի գլուխը: Դու մի ասի՝ այդ հին, զվարճասեր որսորդը արջի մորթին վրան առել, եկել է ժեզ փորձելու:

Նա գրկել, համբուրում էր Գևորգին, ինձ նույնպես համբուրեց:

— Այ՛, նոր իմացա,— ասաց նա, որ իսկական որսորդ եք:

Մենք երեքով գյուղ վերադարձանք: Ես ու Գևորգը՝ հրացանները ուսներիս, կողք-կողքի քայլում էինք քեռի Թոմասի առջևից, հաղթանակ տարած զինվորների պես:

Մեկ օրում այդ լուրը տարածվեց ամբողջ գյուղում, ամեն տեղ մեր մասին գովասանքով էին խոսում:



# ՀԱՅՐԵՆԱՍԵՐ

# ԱՂՋԻԿԸ

Մարին տասնհինգամյա մի ֆրանսուհի էր։ Նա իր ծնողների հետ ապրում էր մեծ անտառի եզերքին։ Նրանք շատ աղքատ էին։ Մարին ամբողջ օրը այծ էր արածեցնում։ Մի անգամ, երբ նա նստած էր չորացած ծառին, թփի հետևից լսեց մի ձայն, որն ասում էր.

— Չնայես շուրջդ, բայց ուշադիր լսիր։ Դու գիտես փոքրիկ լուսամուտը քո անկողնի վերևում։ Այս գիշեր ժամը տասնմեկին կանգնիր քո մահճակալի վրա և տասը րոպե բռնիր լամպը ուղիղ լուսամուտի տակ։ Հետո հանգցրու կրակը և գնա քնելու։

— Բայց ես չեմ կարող գուշակել ժամը,— հանգիստ ասաց Մարին,— որովհետև ժամացույց չունեմ։

— Լավ,— ասաց ձայնը,— ես քեզ համար մի ժամացույց կթողնեմ տերևների մեջ։ Սպասիր մի քանի՜ րոպե, հետո եկ և վերցրու։

Մարին գտավ ժամացույցը։

Այդ գիշեր, ժամը տասնմեկից մի փոքր շուտ, նա լսեց սավառնակի ձայն։ Թվում էր, թե սավառնակը պտտվում էր շատ բարձրում։ Ուղիղ ժամը տասնմեկին նա լամպը պահեց լուսամուտի տակ։ Երբ մի ձեռքը հոգնեց, պահեց մյուս ձեռքով։ Մարին նկատեց, որ սավառնակի ձայնը այլևս չի լսվում։ Տասը րոպեից հետո նա մարեց կրակը, պառկեց անկողնում և ընկավ մտածմունքի մեջ...



* * *

Ֆրանսիան պարտված էր, կառավարությունը՝ տապալված։ Բայց անտառներում ու սարերում կային հազարավոր հայրենասերներ, որոնք չէին նահանջում։ Նրանք դիմադրում էին թշնամուն, ոչնչացնում երկաթուղիներն ու կամուրջները և իրենց կյանքը վտանգելով անում էին ամեն հնարավոր բան, որպեսզի դժվարացնեին թշնամու վիճակը։

Բայց նրանք միշտ զենքի և ուտելիքի կարիք էին զգում։ Եվ նրանց համար զենք ու մթերք էին գցում Անգլիայից եկող սավառնակները։

Իմ լույսը սավառնակին օգնելու համար էր,— ասաց ինքն իրեն Մարին և քնեց։

Որոշ ժամանակ հետո Մարին անտառից լսում էր նույն ձայնը և կատարում նրանից ստացած բոլոր հրամանները։ Երբեմն նա ցույց էր տալիս լամպը ավելի շուտ, երբեմն ավելի ուշ քան առաջին գիշերը, բայց նա միշտ լսում էր մեկ կամ ավելի սավառնակների ձայներ, որոնք լույսից հետո երևում էին և թռչում դեպի անտառները։

Ու մի առավոտ նա հանդիպեց ձայնի տիրոջը, ֆրանսիացի երիտասարդ զինվորին։ Նա եկավ և նստեց նրա մոտ՝ չորացած ծառի վրա։

— Շնորհակալ եմ, Մարի, քո ցույց տված ձա-

ռայության համար,—ասաց նա։—Մենք գիտենք, որ դու կարող ես օգնել Ֆրանսիային և քո հայրենակիցներին։ Այս գիշերը շատ կարևոր է։ Շատ արժեքավոր իրեր պիտի գցվեն, և դուք պետք է հենց ուղիղ ժամը երեքին։ Կարո՞ղ ես դու այդքան երկար արթուն մնալ։ Ստուգիր, արդյո՞ք քո լամպը լիքն է յուղով։ Շատ բան է կախված այս գիշերվա մեր հաջողությունից։

Ես գործը չեմ ձախողի, ասաց Մարին։

Բայց այդ երեկո, երբ նա ընթրիք էր պատրաստում ծնողների և իր համար, դրսից ձայներ ոտնաձայներ լսվեցին։ Առանց դուռը ծեծելու, գերմանական երկու զինվորներ դուռը բացեցին և ներս մտան։

— Կանգնեք տեղում և չշարժվեք,—գոռաց նրանցից մեկը։

Մյուսը սկսեց խուզարկել խրճիթը։ Փոքր սենյակը նայելուց հետո, թվում էր, թե նա բավարարվեց։ Հետո գնաց մյուս՝ ավելի փո՞քր սենյակը, որտեղ քնում էին Մարիի հայրն ու մայրը։

— Ոչինչ չկա այստեղ,—ասաց նա, երբ դուրս եկավ։

Նա աստիճաններով բարձրացավ դեպի Մարիի ննջարանը և անմիջապես բղավեց.

— Դա այստեղ է։ Լուսամուտը առաստաղին և լամպը պատրաստ՝ ազդանշան տալու համար։

Գերմանացին նորից ներքև իջավ և սկսեց խոսել մյուսի հետ։ Մարին չհասկացավ, որովհետև նրանք խոսում էին իրենց լեզվով։ Բայց նրանք ծիծաղում էին, և թվում էր, թե շատ գոհ էին ինչ-որ մի բանից։ Նրա ծնողները պատրաստվեցին գնալ իրենց սենյակը։ Մարին ծնողներին զգուշացրեց, որ փախուստի ոչ մի փորձ չանեն, եթե ոչ նրանք կսպանեն իրեն։ Մի զինվոր բարձրացավ նրա սենյակը ու մնաց այնտեղ։ Մյուսը մնաց ներքևում հսկելու Մարիին։

Նա նստած էր հանգիստ, անվերջ մտածելով, թե ինչ կարող է անել։

Վերևում գտնվող զինվորի բարձր շնչառությունից Մարին հասկացավ, որ նա արդեն քնած է, բայց թեկուզ կարողանար գնալ իր սենյակը, միևնույն է, չէր կարող առանց զինվորին արթնացնելու կանգնել մահճակալի վրա և ցույց տալ ազդանշանը։ Ժամը երկուսն անց կես էր։ Նա հիշեց իր խոսքերը, որ ասել էր ֆրանսիացի զինվորին «Ես չեմ ձախողի»։ Եթե նա անգամ դուրս գար տնակից, ի՞նչ կարող էր անել։ Ժամը երեքից քառորդ էր պակաս։ Արդյո՞ք նրան հսկող պահակը չպիտի քներ։ Հանկարծ զինվորի գլուխը առաջ թեքվեց, և մի քանի րոպե հետո նա արդեն քնած էր։ Մարին գոգնոցի գրպանում շոշափեց լուցկու տուփը, և նրա գլխում մի միտք ծագեց։ Առանց աղմուկի նա բացեց դուռը և դուրս եկավ։ Վազելով տան հետևը, նա մի բուռ չոր խոտ փրցրեց և տեղավորեց ցախի կույտի տակ։ Ապա վառեց լուցկին և կպցրեց խոտը։ Վայրկյանապես փայտերը բոցավառվեցին։ Նա այրվող փայտի մի կտոր գցեց չոր տանիքի վրա ու վազեց դեպի ծնողների սենյակի լուսամուտը։ Նա ջարդեց ապակին և բղավեց «Հրդե՜հ, հրդե՜հ, փրկեցեք ձեր կյանքը»։ Հետո նա վազեց դեպի անտառ, հետևում թողնելով բոցերի մեջ կորած խրճիթը։ Այդ ժամանակ նա մի կրակոց լսեց։

Առավոտյան ֆրանսիացի զինվորը շուտ եկավ, և Մարին պատմեց պատահածը։

— Դու լավ ես արել, Մարի,—ասաց նա։—Դու չձախողեցիր գործը։ Սավառնակը մեզ բերեց այն, ինչ որ հարկավոր էր։ Քո ծնողները հիմա գյուղում են, ապահով վիճակում։ Վերևի գերմանացին չկարողացավ ժամանակին փախչել, իսկ մյուսը նույնպես կենդանի չէ։

— Իսկ ի՞նչ եղավ մեր տունը,—հարցրեց Մարին։

— Դա քո զոհաբերությունն էր,—հանգիստ ասաց նա,—երբ մեր բոլոր թշնամիները պարտված կլինեն, դուք շատ գեղեցիկ տուն կունենաք։ Իսկ այժմ լավ կանես, որ գաս անտառ, մեր ճամբարը, որտեղ դու ապահով կլինես։

Անգլերենից թարգմ.
ՌՈՒԶԱՆՆԱ ՆԱԼՉԱՋՅԱՆ
(Երևանի Չեխովի անվան միջն. դպրոցի 10-րդ դասարանի աշակերտուհի)



Նկ. Գր. ԽԱՆՋՅԱՆԻ

# ՄԵԾԱՄԻՏ ՈՍՊԸ

Ն. ԳԻՆՈՍՅԱՆ



Մի տափակ ոսպ թմբին անեց,
Պանեստ հասավ, բարձր կանչեց.
— Էլ ո՞ւր մնամ պարկի միջին,
Ոսպերի հետ թույլ ու չնչին,
Ես ուզում եմ ապրել մենակ,
Չէ՞ որ ոսպ չեմ ես հասարակ,—
Ու մեծ պարկից ներքև սահեց,
Նետվեց գետին ոսպուկը «մեծ»,
Ընկավ խոնավ մի մութ պուճախ:
Այսպես անցավ առժամանակ,
Հանկարծ անձրև մաղեց բարակ,
Մարդիկ խմբով պահեստ մտան
Եվ պարկերում ինչ որ գտան՝
Ընտիր ցորեն, մաքուր վարսակ,
Սերմացուներ տեսակ-տեսակ,
Դուրս հանեցին պահեստից այն:
Պարկով ոսպն էլ գրկած տարան,
Պահ տվեցին խոնավ հողին
Ու աննշան ոսպին թողին
Մենակ ու խեղճ,
Պահեստի մեջ:
Երբ ոսպուկը նայեց վերև,
Դրսում գարուն, դրսում արև,
Իսկ պահեստի մութ պուճախում
Ինքը մենակ ո՜նց է դողում:
Միտք էր անում աչքը փակած,
Դեմքին խփեց ավելն հանկարծ,
Ծամփաներով ոլոր մոլոր,
Փոշով պատած դեմքը տափակ,
Նետվեց միջանցք, այնտեղից բակ
Ու չորացավ արևի տակ:

Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Տ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 08745. Պատվեր 822: Տպաքանակ՝ 8000: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 31/V 1960 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը
Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Համարն ունի առանձին էջեր՝ հոկտեմբերիկների համար:




№ 6 ՀՈՒՆԻՍ 1960

## ՎՏԱՆԳԱՎՈՐ

Շատ բույսեր դեռ չեն բացել բողբոջները, իսկ կովկասյան լեռնավարդի շիտակ և հարթ ճյուղերի ծայրերին փթթում են ծաղիկները: Խոշոր, դեղնա-ոսկեգույն ծաղիկները աճում են կարծես փնջերով:

Այդ ծաղիկներն ունեն ուժեղ բուրմունք, որը նսեմացնում է անտառի մյուս բոլոր բույսերի բույրը: Լեռնավարդի փնջերը չեն թողնում սննյակում, հակառակ դեպքում առավոտյան բոլորը գլխացավով վեր կկենան:

Փարթամ, հոտավետ ծաղիկները գրավում են մեղուներին, հատկապես վաղ գարնանը: Փեթակները արագորեն լցվում են թարմ մեղրով: Անփորձ տերը ուրախանում է այդպիսի եկամուտով: Նրա այդ ուրախությունը վաղժամ է, այդ քաղցր մեղրը պարունակում է առողջության համար վտանգավոր նյութեր: Իզուր չէ, որ հնում մի քանի ցեղեր փախչելով թշնամիներից, իրենց բնակավայրերում թողնում էին թունավոր մեղր, որը նրանց փրկում էր անկոչ «հյուրերից»:

Ոչ վայրի և ոչ էլ ընտանի այծերը չեն ուտում լեռնավարդի թփերից: Անասունները հեռվից ճանաչում են վտանգավոր բույսը: Թմրեցնող բուրմունքը և թունավորված տերևները պաշտպանության միջոց են անտառային գեղեցկուհու համար:

Բայց երբեմն զոռոզ գեղեցկուհին ինքն է ընկնում դժբախտության մեջ. բավական է մի փոքրիկ կայծ անգամ ընկնի նրա ճյուղերին, անմիջապես թուփը կբռնկվի, ինչպես բենզինով ներծծված բամբակ: Լեռնավարդի հյութը պարունակում է հեշտ բռնկվող նյութեր:

## ԳԵՂԵՑԿՈՒՀԻՆ

Այդ հետաքրքիր բույսը աճում է չոր անտառների հողերում: Այդ պատճառով լեռնավարդի թփերը Սև ծովի ափին ծառայում են ճանապարհները զարդարելու համար: Իսկ լեռնավարդի ծաղիկներից ստանում են թանկագին յուղ պարֆյումերային արդյունաբերության կարիքների համար:

## ՕՁԵՐԻ ԹՈՒՅՆԸ

Բոլորին հայտնի է, որ օձի թույնը երբեմն կարող է մահացու լինել: Օձի խայթոցից մարդու մոտ առաջանում են բազմաթիվ բարդ երևույթներ: Խայթած մկանամասում գոյանում է ուռուցք, մաշկի տակ կապտավուն է արյունազեղում: Մարդը սարսափելի ցավ է զգում: Թույնը ներծծվելով արյան մեջ, առաջացնում է ուժեղ գլխացավ, թուլություն, գիտակցության կորուստ, շնչառական օրգանների կաթված, արյունահոսություն: Եվ, վերջապես, 2-3 ժամ հետո վրա է հասնում մահը: Լավագույն դեպքում թունավորված մարդը առողջանում է մոտ երկու ամիս հետո:

Բուժման եղանակները բազմազան են:

Նախ հատուկ գործիքներով խայթված տեղից թույնը հանում են, վերքը այրում, կատարում են ներարկումներ և այլն:

Ամենահուսալի միջոցը հակաօձային շիճուկի ներարկումն է:

Այս ամենը իմանալուց հետո, զարմանալի է հաստատել, որ օձի թույնը բուժում է մի շարք հիվանդություններ: Նրանով կարողանում են բուժել բորոտությունը, անդամալուծությունը:

Վերջերս Չինական գիտությունների ակադեմիայի արշավախումբը ձեռնամուխ եղավ Հեռավոր Արևելքի «Օձերի կղզու» թունավոր բնակիչների ուսումնասիրմանը:

Այդ կղզին գտնվում է Պորտ-Արթուրի մոտ:

Ահա թե ինչ է պատմում արշավախմբի անդամ Ցզին Դունը:

«Կղզին ծածկված է խիտ անտառներով, ամեն տեղ երևում են խայտաբղետ ծաղիկներ: Կղզի իջնելուն պես մենք պահակներ նշանակեցինք, որովհետև ամեն քայլ կարելի էր հանդիպել թունավոր հակառակորդներին:

Արշավախմբի ճամբարի շուրջը փորած խրամատի մեջ ճանապարհորդները նրանց ժամանելուն փոսի մեջ հակաօձային թույն լցրեցին: Մահճակալների ոտքերը նույնպես դրել էին այդ հեղուկով լիքը բանկաների մեջ:

«Օձերի կղզին» ունի ընդամենը 4 քառ. կմ. մակերես, իսկ բնակիչները միայն օձերն են:

Ձկնորսների տարածած պատմությունները թունավոր բնակիչների մասին, կղզին դարձրել էր անմատչելի: Արշավախմբի նպատակն էր պարզել, թե օձերի ինչ տեսակներ կան, որքա՞ն են դրանք և առհասարակ ինչո՞վ են սնվում:

Առաջին օրը արշավախմբի անդամներին գրեթե ոչինչ չհաջողվեց որսալ: Ցրտի պատճառով օձերը դուրս չէին եկել իրենց բներից: Բայց երկրորդ օրը բախտը ժպտաց: Արշավախմբի անդամներին հաջողվեց որսալ 300 օձ: Բայց ինչո՞վ են սնվում այդ օձերը: Պարզվեց, որ կղզին հանդիսանում է չվող թռչունների հանգստյան վայր: Աշխարհի ոչ մի կենդանաբանական այգում այդքան թռչուն չկա, որքան այդ կղզում: Օձերն էլ հենց այդ թռչուններով են սնվում: Բայց հաճախ իրենք էլ են որս դառնում ճայերի, անծեղների և բազեների համար: Կղզում կան նաև մեծ քանակությամբ ճանճեր, որոնցով սնվում են թռչունները: Թռչուններով սնվում են օձերը: Այսպիսի պայմաններում բնական է, որ կղզում օձերը շատ են բազմանում:

Այժմ «Օձերի կղզին» համարվում է արգելավայր: Օձերին չի կարելի ոչնչացնել, որովհետև նրանք հանդիսանում են բնական դեղարանի աղբյուր, որը շատ անհրաժեշտ է բժշկության համար:

Հ. ՔԵՐՈՅԱՆ

## Երկրագունդը շնչում է ու ջղաձգվում

...Չիրպոյ Եղբայրների կղզի:

Բոլորովին անսպասելի, այս կղզու վրա արթնանում է հրաբուխը: Երկրագունդը սկսում է արտաշնչել հրաբխային լավա: Կղզին ծածկվում է գոլորշիների և մոխրի թանձր քուլաներով: Ցնցվում է գետինը... Մի փոքր անց կղզին միանում է ափին, կազմելով մի մեծ ու գեղեցիկ հրվանդան:

...1849 թիվ: Ամառ: Սիմուշիր կղզի

Այստեղ կարծես մոգական գավազանի ուժով չքանում են բոլոր աղբյուրները, ջրհորներում ջուրը ցամաքում է: Եվ կղզին շատ կարճ ժամանակամիջոցում դառնում է անապատ: Կղզու բնակիչները ստիպված լքում են իրենց բնակավայրերը և գնում մայր ցամաք:

...Ուրուպ կղզի:

Ափից 300 մետր հեռավորության վրա նկատվում են խարսխված նավի բեկորները: Եվ ինչպես են դրանք հայտնվել ափից այդքան հեռու, գրված է նավի օրագրում.

«1780 թ. նոյեմբերի 8: Սկսվեց ուժեղ երկրաշարժ: Ծովը այնքան բարձրացավ, որ «Նատալիա» նավը նետվեց կղզու խորքերը»:

Երբ ջրերը նորից ետ են քաշվել, ջախջախված նավի բեկորները մնացել են կղզու վրա:

Այսպիսի զարմանալի դեպքերը պատահում են երբեմն չափազանց անսպասելի կերպով: Ոչ մի նշան մոտալուտ փորձանքի չի կանխագուշակում: Բայց հանկարծ ափերի մոտ ալիքները սկսում են եռալ, ահռելի ուժով հարվածում են ափերին և... նույնքան անսպասելի, ամեն ինչ կրկին հանդարտվում է:

Մինչև հիմա էլ մեր երկրի խաղաղ օվկիանոսյան ափերի մոտ շղթայաձև ձգված Կուրիլյան կղզիներում երկիրը շարունակում է ծանր շնչել ու ջղաձգ-

Շարունակությունը 2-րդ էջում

